# ՆՈՐ ՏԱՐԻ

*Ռ. ՂԱՐԻԲՅԱՆ*

Թոռնիկները վազեցին ներս
Ու կախվեցին տատիկից.
— Տատի՛, տատի՛, այսօ՛ր էլ մեզ
Մի բան պատմիր քո կյանքից:
— Դե, ի՞նչ պատմեմ իմ աչքի լույս,
Ժիր ու խելոք թոռներին,—
Ու տատիկը լուռ նայեց դուրս՝
Ձյան մեջ կանգնած ծառերին.
— Ամեն տարի, երբ մեր գյուղում
Ձյուն ու ձմեռ է գալիս,
Աչքերիս մեկը ծիծաղում,
Մեկը արյուն է լալիս...

Քույրս ինձնից փոքրիկ էր դեռ,
Գարնան ծիծաղն աչքերին,
Մենք դուրս ելանք մի ցուրտ ձմեռ՝
Դիմավորենք նոր տարին:
Ձար աղայի տանը զուգված
Տոնածառն էր շողշողում,
Իսկ մենք դրսում ցրտին կանգնած
Նայում էինք ու դողում...
— Ի՞նչ եք նայում, շան լակոտնե՛ր,—
Մռնչաց մի ձայն որոտաց...
Ու ձայնի հետ բունդ ապտակից
Քույրս ձյան մեջ թպրտաց...

*Նկ. Մ. ՍՈՍՈՅԱՆԻ*





Հին օրերում, տատը մատաղ
Իր սիրունիկ զավակներին,
Ձմեռ պապին մոտ չէր գալիս
Աղքատների դռներին:
Էն ժամանակ շատ էր խավար,
Ու դժվար էր ամեն բան...
Երանի ձեզ, ու ծաղկավառ
Ձեր երջանիկ մանկության:
Տատն ավարտեց զրույցն իր հին,
Ու նոր տարին մտավ տուն,
Մտավ, իր հետ մանուկներին
Բերեց ծիծաղ, ցնծություն:






*Կոմունիստական պարտիայի գործի պայքարին եղի՛ր պատրաստ*

№ 1
ՀՈՒՆՎԱՐ
1956 թ. ՀՐԱՏԱՐԱԿՈՒԹՅԱՆ 28-ՐԴ ՏԱՐԻ
ՀԼԿԵՄ ԿԵՆՏԿՈՄԻ ԱՄՍԱԳԻՐ ՊԻՈՆԵՐՆԵՐԻ ԵՎ ԴՊՐՈՑԱԿԱՆՆԵՐԻ ՀԱՄԱՐ

# ՀԻՆԴԻ, ՌՈՒՍԻ ԲՀԱՅ, ԲՀԱՅ

Հեռո՜ւ Հնդկաստանում, Բոմբեյ քաղաքի շըրջակայքում գտնվող Առի կաթնաֆերմայի բակում թեթև քամուց օրորվում են երկու փոքրիկ նշենիներ: Շուրջը փարթամ, արևադարձային ծառեր շատ կան, բարձր, ստվերախիտ ծառեր. բայց երբ հընդիկներն անցնում են այդ փոքրիկ նշենիների մոտով, մի պահ կանգ են առնում, ժպտում ու շարունակում իրենց ճամփան: Իսկ փոքրիկ տղաներն ու աղջիկներն ամեն օր ցնցուղներով ջուր են բերում և խնամքով ջրում այդ ծառերը: Դրանք հասարակ նշենիներ չեն: Հնդիկները դրանց բարեկամության ծառեր են անվանում...



1955 թվականի նոյեմբերի տասնութին Հընդկաստանի մայրաքաղաք Դելիի օդանավակայանի վրա ողջույնի մի պտույտ կատարելուց հետո, ցած իջավ սովետական Իլ—14 տիպի մի մարդատար ինքնաթիռ: Երբ օդանավին մոտեցվեցին շարժական աստիճանները, և բաց դըռներում երևացին Սովետական կառավարության ղեկավար Նիկոլայ Բուլգանինն ու ՍՍՌՄ Գերագույն Սովետի Նախագահության անդամ Նիկիտա Խրուշչևը, ամբողջ օդանավակայանը թնդաց ծափահարություններից և ուրախ բացականչություններից: Մոտ քսան հազար մարդ էր եկել սովետական հյուրերին դիմավորելու: Օդանավակայանը զարդարված էր կարմիր պաստառներով, որոնց վրա ռուսերեն և հինդի լեզվով գրված էին՝ «Կեցցե՜ Հնդկաստանի և ՍՍՌՄ-ի ժողովուրդների բարեկամությունը», «Բարի գալո՜ւստ», «Կեցցե՜ Նիկոլայ Ալեքսանդրովիչը», «Կեցցե՜ Նիկիտա Սերգեևիչը»: Սովետական հյուրերին ողջույնի խոսք ասաց Հընդկաստանի Պրեմյեր-Մինիստր Ջավահառլալ Ներուն:

Հենց որ նրանք բարձրացան օդանավակայանում պատրաստված ամբիոնը, վեր խոյացան Սովետական Միության և Հնդկաստանի հազարավոր մեծ ու փոքր դրոշակներ, օդ բարձրացան անթիվ օդապարիկներ:

Հետևյալ օրը Դելիում մեծ միտինգ եղավ, որին մասնակցում էր ավելի քան կես միլիոն մարդ: Դելիի և շրջակա բնակավայրերի բնակիչները եկել էին ողջունելու սովետական մեծ երկրի ղեկավարներին:

Այսպես ամեն օր, Հնդկաստանի որ քաղաքում էլ որ հանդես էին գալիս սովետական հյուրերը, հնդիկները ջերմ ընդունելություն էին կազմակեր-



Ն. Ա. ԲՈՒԼԳԱՆԻՆԸ ջրում է իր տնկած ծառը:
*Լուսանկար՝ Վ. ԵԳՈՐՈՎԻ (ՏԱՍՍ)*

պում: Ամենուր բացագանչում էին. «Հինդի, ռուսի բհայ, բհայ», որ նշանակում է «հնդիկներն ու ռուսները եղբայրներ են»:

Հնդկաստանի երեխաները ծաղիկներ էին մատուցում Նիկոլայ Բուլգանինին ու Նիկիտա Խրուշչևին, նրանց պատվին հանդեսներ էին կազմակերպում: Բոմբեյի ստադիոնում հազարավոր հնդիկ երեխաներ տոնական հանդես կազմակերպեցին: Ամենահեռավոր գյուղերից մարդիկ գալիս էին քաղաք, որպեսզի տեսնեն սովետական հյուրերին:

... Դելիից օդանավակայան տանող ճանապարհին, մի մեծ ծառի ստվերում կանգնած էր ութսունամյա մի ծերունի: Նա կույր էր և կանգնած էր ձեռքը բռնած ուսին դրած: Մարդիկ անընդհատ հարցնում էին նրան, թե ինչո՞ւ է քառասուն կիլոմետր ճանապարհ կտրել, եկել հասել քաղաք: Չէ՞ որ նա կույր է և սովետական ղեկավարներին չի տեսնի: «Հետո՞ ինչ,— պատասխանում էր ծերունին,— սա ինձ համար ուխտագնացություն է: Երեսունութ տարի առաջ, երբ ես աշխատում էի տեքստիլ ֆաբրիկայում, մենք իմացանք, որ Ռուսաստանում ռևոլյուցիա է եղել, և բանվորներն այնտեղ իրենց կառավարությունն են ստեղծել: Ես հիմա ուզում եմ այդ պետության ղեկավարներին իմ հարգանքը մատուցել: Ես կույր եմ, չեմ կարող տեսնել, բայց իմ թոռը կպատմի, թե ինչպիսին են նրանք»:

Այսպիսի դեպքեր շատ էին տեղի ունենում: Կալկաթայում մոտ երեք միլիոն մարդ էր դուրս եկել Բուլգանինին և Խրուշչևին ողջունելու: Հնդկական թերթերը նշում էին, որ Հնդկաստանում դեռ ոչ ոք այդպես ջերմորեն չի ընդունվել:

Սովետական ղեկավարները եղան նաև Բիրմայում և Աֆղանստանում: Մի ամիս տևեցին նրանց բարեկամական այցելությունները, և այդ մի ամիսը Սովետական Միության, Հնդկաստանի, Բիրմայի և Աֆղանստանի ժողովուրդների բարեկամության ամրապնդման ամիս եղավ:

Սովետական ղեկավարներն այնտեղ իրենց բազմաթիվ ելույթներում մերկացրին իմպերիալիստների գաղութային քաղաքականությունը, խոսեցին այդ ժողովուրդների ինքնուրույնության պահպանման օգտին, խոստացան այդ երկրներին օգնել սեփական արդյունաբերությունն ու տնտեսությունը զարգացնելու գործում:

***

Երբ Նիկոլայ Բուլգանինն ու Նիկիտա Խրուշչևը այցելեցին Բոմբեյի Առի կաթնաֆերման, բակում նրանք նշենու մեկական ծառ տնկեցին: Այդ ծառերի կողքին տախտակների վրա ռուսերեն և հինդի լեզվով գրված է. «Այս ծառը տնկել է ընկեր Ն. Ա. Բուլգանինը, ՍՍՌՄ Մինիստրների Սովետի Նախագահը, 1955 թվականի նոյեմբերի 24-ին», «Այս ծառը տնկել է ընկեր Ն. Ս. Խրուշչևը, ՍՍՌ Միության Գերագույն Սովետի Նախագահության անդամ, 1955 թվականի նոյեմբերի 24-ին»:

Կանցնեն տարիներ, փոքրիկ նշենիները կմեծանան, մեծ ծառ կդառնան, պտուղ կտան և այդ ծառերի նման տարեց-տարի կաճի ու կամրապնդվի մեր երկրների ժողովուրդների բարեկամությունը, որը խաղաղության պատվար կդառնա ամբողջ աշխարհում:

# ՍԱՌՑԻ ՏԱԿ

Գ. ԱՐԵՎՅԱՆ

Նկ. Ս. ՍԱՖԱՐՅԱՆԻ

*Մի քանի օր ձյուն տեղալուց հետո, երկինքը միանգամից բացվեց։ Սկսված պարզկա եղանակներն իրենց հետ բերեցին դաժան սառնամանիքներ։ Գյուղի ծերունիներն ասում էին. «Էսպիսի ցրտեր դեռ չեն եղել»։*

*Չնայած դրան, յոթերորդ դասարանցի երկու տղա՝ Սուրիկն ու Հարութը ուրախացել էին։ Հունվարյան մի առավոտ էր, դպրոցական արձակուրդների օրերին. նրանք տաք հագնվեցին, դուրս եկան տներից և բռնեցին դաշտ տանող ձյունապատ ճանապարհը։*

*Նրանք իրենց հետ ոչինչ չունեին, բացի թոկերի երկար շամփուրներից։ Շուտով հասան բլրալանջ, թեքվեցին այնտեղից և ծածկվեցին մարդկանց աչքից։ Անցան Ներքին դաշտերը, հետո Վերին դաշտերը. էլի շարունակեցին։*

*— Չհասա՞նք, էսքան հեռո՞ւ է,— հարցրեց Հարութը,— ամռանը, երբ խուրձ էինք կրում, կես ժամում հասնում էինք։*

— Հիմա կհասնենք, էն բլրի հետևն է, չգիտե՞ս,— եղավ Սուրիկի պատասխանը։

Բլրի հետևը լիճն է, փիրուզյա լիճը, որ ամեն ամռան մերկ պատանիներով է լցվում, իսկ ձմռանը սառչում։ Լճի մեջ են թափվում մի քանի աղբյուրներ, բայց նրանից սկիզբ չի առնում և ոչ մի գետակ։ Լճակը կենդանական աշխարհից զուրկ է։ Գյուղում այդ բացատրում են նրանով, որ լիճը, իբր, մինչև հատակը սառչում է։

— Ահա և լիճը,— առաջինը գոչեց Սուրիկը։

Մի լայն հրապարակի չափ հարթ տարածություն էր դա։

— Ինչ սքանչելի՜ է, ձյունը ո՜նց է շողշողում, պեծին տալիս,— նորից գոչեց նա և քայլերն արագացրեց։

Կես մետրից ավելի ձյան շերտը ճեղքելով, նրանք քայլեցին մինչև լճի կենտրոնը և կանգ առան։ Ապա սառցի վրայից մաքրեցին ձյունը, բացեցին երկու-երեք քառակուսի մետր տարածությամբ փոքրիկ հրապարակ ու շամփուրները մոտ բերեցին։

Սուրիկն ուզում էր շամփուրի սուր ծայրը սառցի մեջ խրել, բայց չհաջողվեց։ Նստեց սառցի վրա և սկսեց փորել սառույցը։ Նրան հետևեց Հարութը։ Ուժգին հարվածներից սառցաբյուրեղները թռչում էին այս ու այն կողմ։

— Մի քիչ հանգստանանք,— խոսեց Հարութն ու նստեց։

— Հանգստանանք,— ասաց Սուրիկը և նստեց նրա կողքին։

Որոշ ժամանակ անց նրանք նոր թափով գործի անցան։ Բայց այլևս շամփուրները ներս չէին գնում։

— Որքան սխալվեցինք, պետք է մուրճ էլ բերեինք,— ասես ինքն իրեն ասաց Սուրիկը։

— Քարով հարվածենք։

Հարութը բլրալանջ ելավ և քիչ հետո վերադարձավ մի քար ձեռքին։

Քարի օգնությամբ շամփուրները մինչև կեսը սառցի մեջ մխրճվեցին։

— Ուրեմն ճիշտ են ասում, որ մինչև հատակը սառած է,— խոսեց Հարութը։

— Այդքան շուտ դեռ եզրակացություն մի հանի։ Ես հավատում եմ, որ խորքը սառած չէ։

Երբ արդեն ուշ էր, նրանք գյուղ վերադարձան։

Հաջորդ օրը Հարութը մտավ կոլտնտեսության դարբնոց։ Դարբին Հովսեփը ոտքը փուքսն աշխատեցնող կոճակին, քուրայի մեջ շիկակարմիր մետաղն էր ունելիով շուռ տալիս։ Նա իր թավ, փոշեգորշ շերտով պատած հոնքերով ու թերթերունքներով աչքերը դարձրեց Հարութին։

— Հը, ի՞նչ կա, մեր տղա։

— Քեռի Հովսեփ, երկու-երեք մետրանոց մի երկար ձող եմ խնդրում։

— Իսկ ինչի՞դ է պետք, ի՞նչ ես անելու,— հետաքրքրվեց դարբին Հովսեփը։

— Հետո 'կասեմ, քեռի՛ ջան, անպայման կասեմ։

Քեռի Հովսեփը դարբնոցի անկյունից մի երկար ձող բերեց, ծայրը սրեց, մյուս ծայրը շամփուրի նման ծռեց, տվեց Հարութին՝ ասելով.

— Հուսով եմ, որ լավ նպատակի համար ես տանում։



...բարակ շատրվան դուրս ցայտեց...

***

Սուրիկն ու Հարութը նորից սառցի վրա են։ Այս անգամ նրանք ավելի եռանդով գործի անցան։ Շատ-շատ աշխատեցին։ Ձեռքերի մեջ կոշտուկներ էին առաջացել, բայց գործում էին, անդադրում գործում։

Մի ուժգին հարված ևս, և ձողն ամբողջովին ընկղմվեց։ Սուրիկն արագ դուրս քաշեց այն. մի գեղեցիկ, բարակ շատրվան դուրս ցայտեց սառցի միջից բացած անցքով։

Սուրիկն ու Հարութը ցնծում էին։

*— Սառցի ճնշումից է, ջուրը սեղմված է, դրա համար էլ այսպես ցայտեց,— ասաց Սուրիկը։*

*— Շատ է խոր,— եղավ Հարութի խոսքը։*

*— Անշուշտ։ Իսկ բոլորն էլ պնդում են, թե լիճը ամբողջությամբ է սառչում։ Եթե այս եղանակին չի սառչում, ուրեմն երբեք չի սառչի, մենք մեր նպատակին անպայման կհասնենք։*

*Եկավ գարունը, լեռնաշխարհի սքանչելի գարունը։ Հենց որ դպրոցում ավարտվեցին ուսումնական պարապմունքներն ու տարեվերջի քննությունները, Սուրիկն ու Հարութը երկու դույլ վերցրին և ճամփա ընկան։ Ոչ ոք չիմացավ, թե ուր են գնում։*

*Ահա նրանք հասան Սևան, ավտոբուսից իջան և դիմեցին ձկնաբուծական կայան։ Շատ եղավ պետի զարմանքը, երբ իմացավ պատանի բնասերների մտադրությունը։*

*— Դուք, ուրեմն, լուրջ գործով եք զբաղված, և ես չեմ կարող ձեզ չընդառաջել,— խոսեց նա։— Իշխա՞ն եք ուզում, կարմրախա՞յտ, թե՞ կողակ։*

*Սուրիկն ու Հարութն իրար նայեցին։ Նրանք չէին մտածել, թե որ տեսակից պետք է տանել։ Պետը հասկացավ և անմիջապես ասաց.*

*— Մի դույլը կողակ լցնենք, մյուսը՝ կարմրախայտ, իշխանը հետո կփորձենք։ Հը, ի՞նչ եք ասում։ Կողակն ու կարմրախայտը լավ հարևաններ են լինում...*

*Տղաները ներքուստ հրճվում էին։*

*— Բայց ձեր դույլերով տանելն այնքան էլ հեշտ չէ, կթափվեն։ Մենք ուրիշ սարքեր ունենք, լցնենք նրանց մեջ, հետո դույլերում տեղավորենք, այդպես անվտանգ կլինի։*

*Տղաները հուզմունքից չէին կարողանում խոսել, միայն գլուխները շարժում էին այնպես, որ նշանակում էր՝ համաձայն ենք։*

*Ուշ երեկոյան նրանք գյուղ հասան և ուղիղ լճափ գնացին ու ձկնկիթը դատարկեցին ջրի մեջ։*

*Այս ամենը տեղի է ունեցել հինգ տարի առաջ։ Հիմա Սուրիկն ու Հարութը օրինակելի կոմերիտականներ են, ավարտել են միջնակարգ դպրոցը և դարձել կոլտնտեսության առաջավորներ։*

*Հաճախ նրանք այցելում էին լիճը։ Մի օր էլ նրանք ուռկան գցեցին և մնացին զարմացած. գրեթե կիլոգրամանոց ձկները թպրտում էին հանված ուռկանում։ Երկար դիտում էին իրենց բռնած չաղլիկ կողակներն ու կարմրախայտերը։*

*Երեկոյան կոլտնտեսության վարչության դրասենյակ մտնելով, Սուրիկն ու Հարութը նախագահի սեղանին դրեցին մի կարմրախայտ և մի կողակ։*

*— Մեր նվերը կոլտնտեսությանը, ընկե՛ր նախագահ։*

*Նախագահը գիտեր տղաների հանրօգուտ գործունեության, խրախուսելի նպատակների մասին, բայց չէր պատկերացնում, թե լճում արդեն այդպիսի չաղլիկ ձկներ են աճել։*

*Նախագահը և կոլտնտեսականները հիացած՝ Սուրիկին ու Հարութին էին նայում։*

*Այժմ շրջկենտրոնի շուկայում, կոլտնտեսության խանութում կարելի է միշտ էլ կարմրախայտ ու կողակ գնել։ Դա Սուրիկի և Հարութի՝ նախկին պիոներների նվերն է հարազատ կոլտնտեսությանը։*




ԱՐՏ. ՔԱԼԱՆԹԱՐՅԱՆ

Նկ. Մ. ՏԻՐԱՏՈՒՐՅԱՆԻ

*Միգամած առավոտ էր։ Մեղմ, մանրակաթիլ անձրևը դեռ գիշերվանից մաղում էր։*

*Գյուղի ծայրին գտնվող մի նորակառույց տան սենյակի դուռը կրնկի վրա բացվեց։ Տասնըչորսամյա Թխադեմ մի տղա երևաց բաց դռան մեջ։ Նա հաճույքով խորը ներս քաշեց Թարմ օդը, ապա աստիճաններով զգուշությամբ բակ իջավ ու դուրս եկավ փողոց։ Ռուբիկը մոտեցավ այն տանը, որտեղ Լուսիկն էր ապրում։ Բակում ոչ ոք չկար։*

— Լուսի՛կ,— բարձրաձայն կանչեց նա։

Գոմից դուրս եկավ Լուսիկի մայրը՝ կաթով լի ամանը ձեռքին։

— Ինչո՞ւ այսքան շուտ, Ռուբիկ ջան,— հարցրեց Աննա մորաքույրը,— դասերին դեռ շատ ժամանակ կա. Լուսիկը սենյակն է հավաքում։

— Աշխարհագրության դաս ունենք, մորաքույր,— պայմանավորվել ենք այսօր շուտ գնալ դպրոց, որ քարտեզով սովորենք։

— Դե վերև բարձրացիր։

Լուսիկը երկար, մինչև ոտքերի ծայրերը հասնող խալաթը հագին, թևքերը արմունկների մոտ ծալած, լուսամուտների ապակիներն էր մաքրում։

— Նստիր, ես հիմա կվերջացնեմ,— ասաց նա Ռուբիկին,— իսկ Գագի՞կն ուր է։

— Դեռ չի եկել։

Ռուբիկը նստեց ռադիոընդունիչի մոտ դրված աթոռին և պտտեցրեց բռնակներից մեկը։ Մոսկվայից դիկտորը պատմում էր, թե ինչպես մայրաքաղաքի №361 դպրոցի հինգերորդ դասարանի գերազանցիկ աշակերտուհի Իրինա Բորտնիկովան մորն օգնում է տնային գործերում։ «Լուսիկի նման», մտածեց Ռուբիկն ու նայեց Լուսիկին։ Երկուսն էլ ժպտացին։

Երբ նրանք փողոց դուրս եկան, անձրևը դադարել էր։ Գագիկենց տան ճանապարհին Լուսիկն ու Ռուբիկը տեսան Շուշան տատին։ Նա մոտակա աղբյուրից դույլով ջուր էր բերում։ Ծեր էր Շուշան տատը, իսկ դույլը՝ ծանր, ահա թե ինչու նա բավականին կորացել ու քայլում է դանդաղ։ Ռուբիկը մոտ վազեց.

— Շուշա՛ն տատի, տուր ես տանեմ։

Տատը դժվարությամբ ուղղեց մեջքը, տնքաց, մի քիչ չեմուչում արեց, բայց որովհետև Ռուբիկը ամուր էր բռնել դույլը, զիջեց նրան։

— Տատի՛, բա ինչո՞ւ Գագիկը չի բերում,— հարցրեց Լուսիկը,— թե՞ տանը չի։

— Է՜, բալա ջան, տանն է, բայց ասում է՝ դաս ունեմ սովորելու։

Բայց Գագիկը դաս չէր սովորում։ Նա պակե մի շիշ էր դրել ցանկապատի վրա ու մոտ քսան քայլից աշխատում էր քարերով հարվածել նրան։

Տեսնելով իր տատիկին Լուսիկի ու Ռուբիկի հետ, Գագիկը չդադարեցրեց իր խաղը, նա միայն ձայն տվեց.

— Ռուբի՛կ, ես երկու անգամ արդեն խփել եմ, դու էլ փորձիր։

Ռուբիկը չպատասխանեց։ Նա դույլը սենյակ տարավ, դրեց տատի ցույց տված անկյունում՝ ծածկեց կափարիչով և դուրս եկավ։

Գագիկն այս անգամ ավելի հաջող դիպցրեց։ Թիրախը ցանկապատի մյուս կողմն ընկավ։ Գագիկն ուրախությունից սկսեց թռչկոտել։

— Տեսա՞ր, Ռուբի՛կ, ա՛յ, այսպես կխփեն,— հաղթական ու հրճվանքից փայլող դեմքով բացագանչեց նա։ Բայց Ռուբիկը չէր ժպտում։

— Ապրես, լավ դիպցրիր,— հեգնանքով ասաց Ռուբիկը։ Դու խաղա, իսկ տատիկդ քեզ համար ջուր բերի։

— Ո՞վ է ստիպել, թող չբերի...

— Լսի՛ր, հայրդ ու մայրդ կոլտնտեսության անասունների հետ սար են բարձրացել։ Դու պիտի օգնես տատիդ։

— Իսկ իմ տեղը դո՞ւ պիտի սովորես, լավ կպահպանեմ գերազանցիկությունս, խոսք չկա, ճիշտ չե՞մ ասում,— դարձավ նա Լուսիկին։



— ... Դու պիտի օգնես տատիդ։

— Ո՛չ,— կտրուկ պատասխանեց Լուսիկը,— միայն դո՞ւ ես գերազանցիկ։ Սեդրակը, Մարիամը, Վարդանը, Ռուբիկը նույնպես գերազանցիկներ են, նրանք և՛ լավ են սովորում, և՛ օգնում են ծնողներին։

— Դե լավ է,— սրտնեղած բացագանչեց Գագիկը,— սրանց նայեք, խոսքը մեկ են արել, գլուխս քարոզ են կարդում։ Միանգամից ասեք, որ չեք ուզում հետս ընկերություն անել։ Իսկի պետքս էլ չէ։ Տատիկիս մասին են մտածում։ Ձեզ ի՞նչ, իմ տատիկը չէ՞, ինչպես կուզեմ կվարվեմ հետը։

— Ո՛չ, միայն քո տատիկը չէ, մերն էլ է.— չարացավ Լուսիկը։

— Դե թող դու էլ...

Գագիկն արագորեն տուն մտավ, վերցրեց պայուսակը ու առանց մի խոսք ասելու հեռացավ բակից։

Ռուբիկն ու Լուսիկը շփոթված իրար նայեցին։ «Հիմա ի՞նչ անենք», կարծես ասում էին նրանց հայացքները։

— Քանի դեռ տատը ուրիշ գործով է զբաղված, եկ միասին հավաքենք սենյակը,— ասաց Լուսիկը։

Երբ Շուշան տատը սենյակ մտավ, նրանք արդ՚ն գնացել էին։ Սենյակում ամեն ինչ դասավորված էր իր տեղում։ Նա շատ զարմացավ և շվարած կանգնած մնաց սենյակի մեջտեղը, հետո նրա դեմքը պայծառացավ։

— Ապրի Գագիկը, երևի ընկերներից ամաչեց,— գոհունակությամբ շշնջաց նա։

⁂

Գագիկն արագ-արագ գնաց, հետո կանգ առավ։ Դասերին դեռ ահագին ժամանակ կար։ Ե՞տ դառնալ... Այդ պահին Գագիկի մեջ երկու ձայն էր խոսում։ Մեկն ասում էր. «Լավ արեցիր, իրենց ի՞նչ գործն է, քո տատին չէ՞, այդ էր պակաս, որ տնային գործերով զբաղվես», իսկ մյուսն ասում էր. «Իսկ որտե՞ղ է քո պիոներական խիղճը, չէ՞ որ նրանք իրավացի են», և այս ձայնն ավելի զորեղ էր։ Գագիկը հիշեց, թե ավելորդ տեղը որքա՜ն վիշտ ու անհանգստություն է պատճառել տատիկին. «Տատի՛, վառարանը վառի՛, տատի՛, կոշիկներս մաքրի՛, տատի՛, տես ով է ինձ կանչում», ու Գագիկի սիրտը ճմլվեց ամոթից։ «Չէ՛ ճիշտ են ասում, իսկ ես հիմարս, վիրավորեցի նրանց»։ «Շատ էլ լավ արեցիր. քթները խոթում են ամեն տեղ, որ տատիկը չի նեղանում, ձեր ի՞նչ գործն է», նորից գլուխ բարձրացրեց առաջին ձայնը։

Հնչեց դպրոցի զանգը։ Դասամիջոցին Լուսիկը մոտենալով Գագիկին ասաց.

— Գագիկ, եթե քեզ համար մենակ դժվար է, ես ու Ռուբիկը ամեն օր ձեր տուն կգանք ու կօգնենք տատիկին, հո չե՞ս նեղանա։

— Չէ՛, հարկավոր չէ,— արագ-արագ սրտնեղած ասաց Գագիկը,— հարկավոր չէ, ես ինքս կհասցնեմ։

Լուսիկը, Գագիկն ու Ռուբիկն ինչպես միշտ, այդ օրն էլ դպրոցից միասին վերադարձան։ Ոչ մի խոսք չեղավ առավոտվա դեպքի մասին։ Երբ բաժանվում էին, Ռուբիկն ասես նոր հիշեց և ասաց, որ մյուս շաբաթ ջոկատի հավաքույթ է լինելու «Պիոները դպրոցում և տանը» թեմայով։

Երբ Գագիկը տուն մտավ, Շուշան տատը ճաշով լի պնակները սեղանին շարեց, ձեռքը քնքշությամբ դրեց թոռան գլխին ու կամացուկ ասաց.

— Ապրե՛ս, Գագիկ ջան, որ օգնում ես ինձ,— և չթողնելով, որ Գագիկը պատասխանի, շարունակեց,— ախր տեսնում եմ տունը հավաքած, մտածում եմ՝ այս ի՞նչ է... Որ մայրիկիդ պատմեմ, ինչքա՜ն կուրախանա։

«Անպայման Ռուբիկն ու Լուսիկն են արել», մտածեց Գագիկը, և նրա սիրտը ճմլվեց։ Նա մտքում չարացավ չգիտես իր, թե իր ընկերների վրա. «մեծ բան է, կարծես, որ ես ուզեմ, չեմ կարո՞ղ օգնել։ Ինձ են ուզեցել ամաչացնել։ Կտեսնենք»։

Ճաշն ավարտելուց հետո, նա բակ դուրս եկավ, վերցրեց կացինն ու փայտերը մանրացրեց։ Այդ գործը շատ հեշտ թվաց Գագիկին։ Ապա նա ջուր բերեց ու նոր միայն սկսեց պատրաստել դասերը։ Իսկ Շուշան տատը երջանիկ դեմքով, ակնոցն աչքերին, հեգելով կարդում էր ինչ որ գիրք։

Գիշեր է։ Պառկել է Գագիկը, բայց քունը չի տանում։ Մտածում է Ռուբիկի, Լուսիկի, իր ընկերների մասին, այն մասին, թե ինչքա՜ն լավն է տատին ու ինչքա՜ն քիչ բան է հարկավոր, որ նա գոհ լինի։ Տատին մթության մեջ կահկարասիներին դիպչելով մի քանի անգամ մոտեցավ նրա անկողնին ստուգելու համար, թե չի՞ բացվել արդյոք Գագիկը։

Գագիկը հուզմունքից շուռումուռ եկավ, տընքաց։ Շուշան տատը անհանգստացավ։

— Ի՞նչ է, բալա ջան,— տագնապով հարցրեց նա,— գլո՞ւխդ է ցավում։ Այսօր շատ աշխատեցիր, հոգնած կլինես։ Կուզե՞ս հոնի մուրաբայով թեյ տամ։

— Չէ՜, տատի ջան,— կամացուկ արտասանեց Գագիկը,— բայց առավոտյան Ռուբիկն ու Լուսիկն են տունը հավաքել... սրանից հետո ես միշտ կօգնեմ քեզ, տատի ջան։

— Հա՞, դե ոչինչ, ոչինչ, քնիր,— հանգստացրեց տատը,— Ռուբիկն ու Լուսիկն էլ իմ թոռնիկներն են։

«Ո՛չ, միայն քո տատին չէ, մերն էլ է», հիշեց Գագիկը Լուսիկի խոսքերը։ Նա գլուխը թաքցրեց վերմակի տակ։ «Իմ լավ, իմ բարի տատի, իմ լավ ընկերներ», մտքում անընդհատ կրկնում էր Գագիկը։

Քիչ հետո նա արդեն հանգիստ քնած էր։

# ԶՂՋՈՒՄ

Ա. ՇԱՀԻՆՅԱՆ

Նկ. Վ. ԹԵՎԱՆՅԱՆԻ

*Դա պատահեց ուրբաթ օրը։ Առավոտյան Խաժակը դասի գնաց անտրամադիր։ Երբ նա դպրոց հասավ՝ զանգը վաղուց տվել էր։ «Ետ չդառնա՞լ,— միջանցքում կանգնած մտածում էր Խաժակը,— է՜հ, ինչ կա որ, թող այսօր էլ դասի չգնամ... Ես հո մյուսների նման չեմ, մի անգամ կկարդամ և արդեն ամեն ինչ պատրաստ է...»։ Իսկ ներքին մի ձայն կարծես թելադրում էր նրան՝ ետ կանգնել այդ վտանգավոր մտադրությունից։ Երբեմնի ուշիմ ու ջանասեր այդ տղան սկսել էր դառնալ ծույլ ու անկարգապահ։*

*Խաժակը դասարանի գերազանցիկ աշակերտներից մեկն էր։ Ընդունակ ու աշխատասեր տղա էր։ Բայց չնայած այդ բոլոր առավելություններին, նրա բնավորության մեջ թաքնվել էր մի շատ վտանգավոր հիվանդություն։*

*Խաժակը մոտեցավ իրենց դասարանին և սրտի դողով հրեց դուռը։*



— Ահա թե ինչպիսի՛ն ես եղել դու...

*Ռուսաց լեզվի ուսուցչուհին, որն զբաղված էր աշակերտների դասարանական տետրերը բաժանելով, մի պահ ընդհատեց աշխատանքը. ակնոցները վերցրեց և մի հայացք գցեց նրա վրա.*

*— Ինչո՞ւ ես ուշանում։*

*Խաժակը չիմանալով ինչ պատասխանել, մի պահ շարժվեց տեղում, ապա հազիվ լսելի ձայնով մրթմրթաց.*

*— Ժամացույցն էր կանգնել։*

*— Մի՞թե դա պատճառ է... լավ, նստիր, բայց տես, որ այլևս չուշանաս...*

*Խաժակն անտարբերությամբ վեր քաշեց ուսերը, ինքնահավան մի հայացք գցելով դասընկերների վրա և նստեց։*

*Ուսուցչուհին շարունակեց ընդհատված աշխատանքը։ Աշակերտները մեկ-մեկ մոտենում էին նրան ու գաղտնի մի հուզումով ստանում իրենց տետրերը։ Հերթը Խաժակին հասավ։ Նա ծուլորեն բարձրացավ տեղից, մի ինքնավստահ ժպիտ դեմքին մոտեցավ ուսուցչուհու սեղանին։ Թառայանը ձեռքի տետրը մեկնեց նրան, գլուխը հանդիմանորեն շարժեց ու ասաց.*

*— Ստացիր և տես, թե քեզ ուր հասցրեց քո մեծամտությունը...*

*Խաժակն սկզբում այդ խոսքերից ոչինչ չհասկացավ։ Նա միայն վերջին բառի վրա խոժոռեց դեմքը, բայց երբ բացեց տետրը, արկի պես անսպասելի պայթեց.*

*— Ինչո՞ւ եք ինձ «3» նշանակել, ես հինգի եմ արժանի...*

*Խաժակի այս խոսքերը, ասես շիկացած երկաթի նման այրեցին ուսուցչուհու սիրտը։ Նա այդ խոսքերից հանկարծակիի գալով շփոթված մի հայացք գցեց զարմանքից արձանացած աշակերտներին, ապա դառնալով Խաժակին, բարկությունից խեղդված ձայնով հազիվ ասաց.*

*— Ահա թե ինչպիսի՛ն ես եղել դու...*

*Աշակերտները կարծում էին, որ այդքանն էլ բավական էր, որպեսզի Խաժակը զղջար, ներողություն խնդրեր, բայց հակառակը ստացվեց։*

*Հենց այստեղ էր, որ կատարվեց ամենասարսափելին։ Խաժակը երկու ձեռքով բռնեց տետրի եզրերից և պատռելով այն, շպրտեց հատակին։ Զայրույթից խեղդված մի ճիչ դուրս թռավ աշակերտների բերանից։ Դժվար էր նկարագրել հոգեկան այն ծանր վիճակը, որ ապրեց Թառայանն այդ պահին։*

*Հաջորդ օրը Խաժակը դպրոց չգնաց։ Երեկոյան յոթերորդ դասարանի մի խումբ աշակերտներ գնացին նրանց տուն և հենց իրեն՝ Խաժակի ներկայությամբ ամեն ինչ պատմեցին նրա հորը։*

*Ահա թե ինչու այդ երեկո այդպես դառնորեն վշտացած էր նրա հայրը։*

*— Ինչպե՞ս համարձակվեցիր պատռել տետրդ... Չէ՞ որ այդ տետրը միայն քոնը չէ։ Դրա մեջ նաև իր աշխատանքն է դրել քո ուսուցչուհին։ Որքա՜ն անքուն ու հուզումնալից գիշերներ է անցկացրել*

նա՝ գրասեղանին հակված քո և ընկերներիդ տետրերը ստուգելիս, իսկ դու նրա երեսին ես շպրտում պատռված տետրը։

Տղան մի պահ անհանգիստ շարժվեց տեղում, ցանկանալով ինչ-որ բան ասել։

Հայրը կռահելով նրա միտքը ավելացրեց.

— Չփորձես արդարանալ... տետրդ պատռելով դու վիրավորել ես ուսուցչուհուդ ինքնասիրությունը, իսկ դա միևնույն է, թե դու շպրտել ես նրա երեսին։ Եվ դու, առանց խղճի խայթ զգալու շարունակ կրկնում ես. «Նա թշնամացել էր ինձ հետ...»։ Մի՞թե աշակերտն այդպես կարող է մտածել իր ուսուցչի մասին։

Հայրը մի պահ ընդհատեց խոսքը։ Ծանր մտքերը նրան տարան հեռու, հեռո՜ւ... Քաղցր ու նվիրական մի հուշ զարթնեց նրա հիշողության մեջ, որը փշրեց, ոչնչացրեց քիչ առաջ եղած սաստիկ բարկությունը։

— Նստիր, նստիր ու լսիր, թե ի՞նչ եմ պատմելու քեզ։ Այն ամենը, ինչ հիմա պատմելու եմ, պատահել է շատ վաղուց, երբ ես տասնմեկ-տասներկու տարեկան տղա էի, գյուղացի տրեխավոր մի տղա։ Ես ընդամենը չորս տարեկան եմ եղել, հայրս մահացել է, ընտանիքի ծանր հոգսը թողնելով մորս վրա։ Մայրս լուսաբացից մինչև ուշ երեկո, ուժասպառ լինելու չափ, աշխատում էր գյուղի ունևորների համար, որպեսզի հոգա մեր ընտանիքի կարիքները։ «Դպրոց գնացողը խեղճ չի մնա, որդի», շարունակ հիշեցնում էր մայրս։

Նա մի րոպե ընդհատեց իր պատմությունը, ապա խորը հոգոց հանելուց հետո շարունակեց.

— Եվ ահա այդ դժվար օրերին մայրս մի նոր վիշտ ապրեց՝ ծանր կերպով հիվանդացավ փոքրիկ քույրս և անկողին ընկավ։ Նրա մարմինը վառվող մոմի նման հալվում էր օրեցօր, ու նայողին թվում էր՝ ուր որ է կմարի։ Նրան ուժեղ սնունդ էր հարկավոր, որ նորից վերադառնար նախկին առողջ վիճակին։ Մայրս հույսը կտրեց բոլորովին, բայց հետո մեր ծանր վիճակը կամաց-կամաց սկսեց թեթևանալ։ Քույրս աստիճանաբար կազդուրվեց և մի երկու ամսից հետո ոտքի կանգնեց լրիվ առողջացած։ Թե որտեղից էր մայրս ճարում քրոջս համար անհրաժեշտ դեղորայք ու սնունդ՝ ես այդ չգիտեի։ Ես միայն հիշում եմ, որ հաճախակի քնելուց առաջ մայրս բարի խոսքերով աղոթք էր մրմնջում ինչ-որ մեկի հասցեին։

Հայրը մի պահ լռեց։ Մշուշված մի հայացք գցեց տղայի արցունքոտված աչքերին և ապա շարունակեց.

— Ես դասերս լավ էի սովորում, բայց այնքան չար էի, որ մի րոպե հանգիստ մնալ չէի կարող։ Ամեն օր մի որևէ անկարգությունով դառնացնում էի մորս սիրտը։ Չնայած շատ տարիներ են անցել, բայց այդ դառը հիշողությունները դեռ մինչև այսօր էլ ծանրացել են իմ խղճի վրա։

Մենք մի ուսուցչուհի ունեինք, Գուրգենյան ազգանունով, որը նոր էր ավարտել քաղաքի օրիորդաց գիմնազիան։ Այսօրվա նման պարզ հիշում եմ նրան։ Բարձրահասակ էր, լայն ճակատով, որի վրա խաղում էին նրա մազերի փոքրիկ խոպոպիկները։

Լինում էին դեպքեր, երբ ես դպրոց էի գնում դասերս չպատրաստած ու փորձում էի թաքցնել նրանից։ Նա նայում էր աչքերիս և անմիջապես հասկանում, որ դասս չգիտեմ, և կարծես դիտավորյալ առաջինը ինձ էր հարցնում։ Բավական էր մի փոքր բան անեի, և նա պատժում էր։ Ես սկսեցի մտածել, որ նա թշնամացել է ինձ հետ...



— ... Մի՞թե աշակերտն այդպես կարող է մտածել...

Մի օր էլ, երբ ես դասի գնացի, հայտնեցին, որ հեռացված եմ դպրոցից՝ ուսման վարձը ուշացնելու համար։ Ես գլխահակ տուն վերադարձա։

— Վա՜յ, տունս քանդվեց,— ողբաց մայրս, երբ լսեց իմ հեռացվելու մասին։

Դրանից հետո ամեն առավոտ մայրս գնում էր տեսուչի մոտ, նրա ոտքերն ընկնելով աղերսում, որ ինձ նորից դպրոց ընդունեն։ Մորս արցունքները հասան իրենց նպատակին, և տեսուչը թույլատրեց ինձ դպրոց գնալ։

Երեկոյան իմացա, որ ոչ թե մորս արցունքներն էին շարժել տեսուչի քար սիրտը, այլ ուսուցչուհին. Նա իր աշխատավարձի մի մասը վճարել

*էր, որ ինձ նորից դպրոց ընդունեն... Իմացա նաև այն, որ հիվանդ քրոջս փրկողը նա է եղել։ Եվ որպեսզի ես չընկճվեմ, նա խնդրել էր մորս, այդ մասին ոչինչ չասել ինձ։ Ահա թե ում համար էր աղոթում մայրս՝ ամեն երեկո, քնելուց առաջ։*

*Այդ ամենը իմանալուց հետո ամբողջ գիշեր չկարողացա քնել. լալիս էի անարցունք ու լռին։ Անհամբեր սպասում էի լույսը բացվելուն, որպեսզի գնամ, ներողություն խնդրեմ, որ անիրավացիորեն մտածել էի նրա մասին։*

*Դուռը բախեցին։ Հայրը, ընդհատելով իր պատմությունը, գնաց դուռը բանալու։ Շեմքին կանգնած էր Խաժակի ուսուցչուհին։ Հայրը սիրալիր ներս հրավիրեց։ Նրանք երկար խոսեցին Խաժակի վարքի և ուսման մասին։ Հետո հայրը նրան պատմեց այն բոլորը, ինչ պատմել էր Խաժակին։*

*— Սպասեք, սպասեք, ձեր պատմությունը կարծես ծանոթ է ինձ,— մտազբաղ ասաց ուսուցչուհին ու մատներով շփեց ճակատը, կարծես ջանալով հիշողության մեջ վերականգնել անցած օրերի աղոտ պատկերները։ Հանկարծ նրա դեմքը պայծառացավ, մշուշված աչքերը մի պահ փայլեցին, դանդաղ ոտքի կանգնեց։*

*— Դե, իհարկե, այդ դու ես, դու... իսկ ես... չես հիշո՞ւմ ինձ, չէ՞ որ ես քո ուսուցչուհին եմ, այն ժամանակ իմ ազգանունը Գուրգենյան էր, հիմա ամուսնուս ազգանունով եմ գրվում։*

*Հայրն այդ լսելով բարձրացավ տեղից։ Նրա դիմաց կանգնած էր երիտասարդ ուսուցչուհին, բարձր հասակով, գեղեցիկ, լայն ճակատով...*

*— Ընկե՛ր Գուրգենյան, թանկագինս...— բացագանչեց նա և երկու ձեռքով գրկեց իր ծերացած, ճերմակահեր ուսուցչուհուն։*

*Խաժակը, որ մինչև այդ շշմած կանգնել էր սենյակի մի անկյունում, հանկարծ սթափվեց, կարծես քնից արթնացավ։ Նրան թվաց, թե ամբողջ սենյակը պտտվում էր։ Նա ինքնաբերաբար ետ-ետ գնաց, չզգալով, թե ինչպես բացեց դուռը և... ձմեռային ցրտաշունչ քամին սթափեցրեց նրան. նա քաշվեց բակի մի մութ անկյուն։ Այնտեղ կանգնեց երկար, երկար։ Հանգիստ չտվող մտքերը սարդի ոստայնի նման խճճել էին նրան իրենց անելանելի ցանցի մեջ։*

*Թե ինչ էր մտածում Խաժակն այդ պահին, ինքն էլ չգիտեր. բայց զգում էր մի բան, որ ինքը կատարել էր անհանդուրժելի մի հանցանք, որի ամբողջ ծանրությունը թողել էր հոր վրա։*

---

## ՁՄԵՌ

*Ն. ՄԻՔԱՅԵԼՅԱՆ*

Սարերին իջել է ձմեռ,
Ու հետո եկել է նա վար
Եվ ձյունե շորեր է բերել
Անտառի, արտերի համար:

Քնած են դաշտերը խնդուն,
Եվ այս ցուրտ ձմռան այս ժամին
Հավքերի երգի տեղ հանդում
Սուլում է ցրտաշունչ քամին:

Իջնում է երեկոն խաղաղ,
Թափվում են փաթիլներ ձյունի,
Թվում է, թե գարնան համար
Երկինքը ժպիտներ չունի:

Բայց այնտեղ հեռու հարավում
Գարունն է պահվել, որ մի օր
Հալեցնի և՛ սառույց, և՛ ձյուն,
Զարդարի դաշտ, անտառ ու ձոր...

## ԻՆՉՔԱՆ ԼԱՎ Է ԴՐՍՈՒՄ...

*Ս. ՄՈՒՐԱԴՅԱՆ*

Արամն ու Վաչեն
Թիակներ առած
Կամուրջ են շինում՝
Ձյունի մեջ կորած:
Ձյունն են հավաքել
Իրենց տան բակի,
Սարքել են ձյունե
Մի սար ահագին:
Երբ որ կամուրջը
Ավարտեն նրանք,
Երկուսն էլ պիտի
Նստեն մեծ սահնակ:
Ու հեռվից իջնեն
Զվարթ աղմուկով,
Սլանան արագ
Կամուրջի տակով:
Ու թեև ձյունն է
Մաղում շարունակ,
Բայց աշխատում են,
Չեն մրսում նրանք:
Նրանցից հեռու
Կանգնել է Սարոն,
Հագել վերարկու,
Փաթաթվել շալով:
Փափախն է քաշել
Մինչ ականջները,
Հագել է բրդյա
Հաստ գուլպաները:
Բայց ո՛չ փափախը,
Ոչ էլ վերարկուն
Ճերմակ ցրտից
Նրան չեն փրկում:
Այս ցրտին միայն
Աշխատել է պետք,
Իսկ աշխատողը
Չի մրսում երբեք:

# ՄԻ ԵՐԱԺՇՏԱԿԱՆ ԴՊՐՈՑԻ ՊԱՏՄՈՒԹՅՈՒՆ

*Ի. ԵՎԳԵՆԵՎ, Լ. ՍՄԻՐՆՈՎԱ*

*Նկ. Վ. ԿԱԺՈՅԱՆԻ*

*— Մեր երաժիշտը,— հարգանքով ասում են վարպետ Ֆոմինի մասին Լենինգրադի Կիրովի անվան գործարանում։ — Երեխա էր, որ եկավ այստեղ, դեռ մինչև Հոկտեմբերը։ Առաջին սովետական տրակտորն է հավաքել նա։ Իր գործի մեծ վարպետ է Անդրեևիչը։*

*Մտերմական զրույցի ժամանակ Կիրովի գործարանի հին բանվորները Ալեքսանդր Անդրեևիչին երաժիշտ են անվանում։ Իսկ ինչո՞ւ...*

*...Այն ժամանակ՝ ռևոլյուցիայի առաջին տարիներին տարօրինակ էր թվում այդ բանը. չորս կողմ պատերազմ էր, բնակարանները չեն տաքացվում, մարդիկ սոված են, իսկ պուտիլովականները որոշում են իրենց երեխաների համար երաժշտական դպրոց բաց անել...*

*Այդ տարիներին հաճախ գործարան էր գալիս մի երաժիշտ՝ Մարիինսկի թատրոնի արտիստ Մ. Ա. Պլոտնիկովը։ Գալիս էր, նստում կարմիր անկյան դաշնամուրի առաջ ու նվագում։ Շատ մարդիկ էին գալիս այդտեղ նրան լսելու. բայց Պլոտնիկովն ամենից շատ սիրեց բանվորների երեխաներին։ Շրջապատում էին նրանք դաշնամուրը և աչքերը չէին հեռացնում արտիստից, իսկ հետո միասին սկսում էին երգել։*

*Մի անգամ, այդպիսի մի երգեցողության ժամանակ կարմիր անկյուն եկավ Ալեքսանդր Անդրեևիչ Ֆոմինը։ Տեսավ, որ երգում են Ռուբինշտեյնի «Դևը» օպերայից «Նոչենկա» երգը և շատ էլ կարգին են երգում...*

*— Լավ է։ Երևում է, որ երաժշտասեր երեխաներ են։*

*— Է՜խ, Ալեքսանդր Անդրեևիչ, ոսկի երեխաներ են, ընդունակ։ Ո՜ւր էր, թե սրանք իսկական երաժշտական դպրոցում սովորեին...,— ասաց Պլոտնիկովը։*

*Այդ միտքը դուր եկավ Ֆոմինին. բայց ո՞րտեղից գտնել գործիքներ, շենք, դասարաններ։ Նա խոսեց շրջանի որոշ մարդկանց հետ, իսկ նրանք, թե՝*

*— Հիմա երաժշտությամբ զբաղվելու ժամանակը չի։ Դեռ հարկավոր է թշնամիներին ջախջախել...*

*Այդ ժամանակ Պուտիլովյան գործարան եկավ Վ. Ի. Լենինը և առաջադրանք տվեց, որ արագացնեն Պիտերի պաշտպանների համար նախատեսված զրահագնացքի կառուցումը։*

*Ալեքսանդր Անդրեևիչը ներկա էր Լենինի խոսակցությանը բանվորների հետ և գլխի ընկավ, թե ում հետ պետք է խոսել երաժշտական դպրոցի մասին։*

*...— Ինչ եք ասում, ինչպես կարելի է ընկեր Լենինի մոտ գնալ այդպիսի դատարկ բաներով,— փորձեց կանգնեցնել պուտիլովականներին քարտուղարը, երբ որոշ ժամանակից հետո նրանք Սմոլնի եկան։ Բայց այդ պահին առանձնասենյակի դուռը բացվեց, և բանվորները լսեցին ծանոթ ձայնը.*

*— Ի՞նչ, պուտիլովյան բանվորների պատգամավորությունն ինձ մո՞տ է գալիս... Ներս եկեք, ընկերնե՛ր, ներս եկեք։*

*...— Լենինն ուշադիր լսեց մեզ,— հիշում է Ալեքսանդր Անդրեևիչը,— տեղն ու տեղը վերցրեց հեռախոսի փողը և խնդրեց, որ միացնեն լուսավորության ժողկոմի հետ։*

*...Մի քանի օր հետո գործարանի դարբասներից դուրս եկավ մի շոգեքարշից ու մի քանի դատարկ պլատֆորմներից կազմած գնացքը և տրամվայի գծով ուղևորվեց դեպի կենտրոն։ Բեռնատար ավտոմեքենաներն այն ժամանակ չէին երթևեկում. բենզին չկար։ Եվ ահա անցորդները զարմացած նայում էին գնացքին։ Նրանք մայրաքաղաքի գլխավոր փողոցներում այդպիսի տրանսպորտ երբեք չէին տեսել։ Գնացքը կանգ առավ Նևսկի պողոտայի վրա գտնվող երաժշտական մեծ խանութի առաջ։ Բանվորները պլատֆորմների վրա խնամքով դրեցին պիանինո, ռոյալ, և շոգեքարշը սուլեց ու բռնեց վերադարձի ճանապարհը։*

*Որոշ ժամանակ անց, 1919 թվականի ամռանը, Պետրոգրադի Նարվայի շրջանի առանձնատներից մեկում սկսեց գործել մեր երկրի առաջին երաժշտական դպրոցը բանվորների երեխաների համար։ Դիրեկտոր նշանակվեց արտիստ Մ. Ա. Պլոտնիկովը։ Դպրոցի բացման լուրն արագորեն տարածվեց երաժիշտների շրջանում։ Եվ այստեղ եկան մանկավարժները՝ կոնսերվատորիայի շրջանավարտները՝ Վորոպայը, Իզմայլովան, Գուբկոն...*

*Դպրոցի առաջին աշակերտները եղան Պլոտնիկովի հին ծանոթները Կիրովի գործարանից։ Դպրոց գրվեցին նաև մանկատան սաները։ Բայց*

*դժվար էր պարապել նրանց հետ։ Նրանցից շատերը ո՛չ կարդալ գիտեին, ո՛չ գրել։*

*1920 թվականի մարտի քսանին տեղի ունեցավ դպրոցի պաշտոնական բացումը։*

*Երկու ամիս հետո, մայիսի վերջին, դիրեկտորի առանձնասենյակ ներխուժեցին երեխաները։ Միմյանց ընդհատելով նրանք պատմեցին, որ շուտով Պետրոգրադ է գալու Լենինը, որ «Կրասնի պուտիլովեց» գործարանի բանվորները կգնան դիմավորելու իրենց առաջնորդին։*



— ... Լենինն ուշադիր լսեց մեզ...

*— Մենք էլ պետք է գնանք,— հուզված ասում էին երեխաները։*

*Սկսվեցին նախապատրաստությունները։ Երեխաները մինչև ուշ երեկո դպրոցից չէին հեռանում, պատրաստվում էին։*

*Եվ ահա 1920 թվականի հուլիսի տասնինին Նարվայի շրջանի դպրոցն իր մանկական փողային նվագախումբն ուղարկեց դիմավորելու Վ. Ի. Լենինին, որը Մոսկվայից գալիս էր Կոմինտերնի Երկրորդ կոնգրեսին մասնակցելու։*

*Կայարանում անթիվ-անհամար մարդիկ կային։*

*Պուտիլովականներն իրենց շարասյունն ունեին։ Նրա կենտրոնում քայլում էին երեխաները՝ առաջին մանկական երաժշտական դպրոցի փողային նվագախումբը։*

*Գնացքը մոտեցավ. երևաց Լենինը։ Նվագախումբը նվագեց «Ինտերնացիոնալ», ապա ռևոլյուցիոն քայլերգեր։ Լենինը տեսավ փոքրիկ երաժիշտներին. ժպտաց, մոտեցավ ու մի ծաղկեփունջ նվիրեց։*

*— Հիշում եմ,— պատմում է Օ. Ա. Վորոպայը,—թե ինչպիսի խնամքով ու հանդիսավորությամբ այդ ծաղկեփունջը բերեցինք դպրոց։ Դպրոցում ծաղիկները բաժանեցինք հանդիպման բոլոր մասնակիցներին։*

*Այդ օրվանից սկսած երեխաներն ավելի մեծ ջանասիրությամբ էին պարապում դասերի ժամանակ, ավելի խնամքով կատարում վարժությունները։*

*Երաժշտությունը հրաշքներ էր գործում։ Մանկատների ամենաանուղղելի սաները կերպարանափոխվում էին, երբ ջութակ էին վերցնում ձեռքները։ Նրանք արձանանում էին, հենց որ լսում էին դասական երաժշտության առաջին հնչյունները. և լսում էին զմայլված։*

*Օրըստօրե ավելի շատ շնորհալի աշակերտներ էին հանդես գալիս դպրոցում։ Օլգա Ալեքսանդրովնա Վորոպայը պատմում է, թե ինչպես մի անգամ, միջանցքով անցնելիս, նա լսեց պարզ, անծանոթ մի մեղեդի։ Նա մտավ դասարան։ Դաշնամուրի առաջ նստած էր Վոլոդյա Սորոկինը՝ Պուտիլովյան գործարանի փականագործի որդին։*

*— Ի՞նչ ես նվագում, Վոլոդյա,— հարցրեց Օլգա Ալեքսանդրովնան։*

*Տղան շփոթվեց, կարմրեց։ Ապագա կոմպոզիտորն ինքն էլ չգիտեր, թե ինչ էր նվագում։ Մի ինչ-որ մեծ բան լցրել էր նրա հոգին, պոռթկում էր դուրս և դառնում պարզ ու գեղեցիկ մի մեղեդի։*

*Դպրոցի կյանքը երբեմն շատ բարդություններ էր ունենում... Սովորում էր այնտեղ Լիդա Միխայլովան. արտաքնապես խաղաղ, հանդարտ մի աղջիկ։ Նա երաժշտությունը կարող էր լսել ժամերով։ Կծկվում էր մեծ բազկաթոռի մեջ, սկսում էր ինչպես մուկիկ և լսում։ Այդ պահերին ավելի լավ էր չմոտենայիր նրան, ոչինչ չէիր կարող իմանալ։*

*Բայց Լիդայի ծնողները հետամնաց մարդիկ էին. չէին ուզում, որ իրենց դուստրը երաժշտություն սովորի։*

*Լիդային փակում էին սենյակում։ Բայց հենց որ ծնողները հեռանում էին տնից, աղջիկը դուրս էր գալիս լուսամուտով, ջրհորդանով իջնում բակ ու փախչում դպրոց։ Աղջկան ուտելիք չէին տալիս, հագուստը, կոշիկները պահում էին, բայց միևնույն է. Լիդան վազելով գալիս էր դասի...*

*Դպրոցի կենսագրության մեջ մտավ մի հիշարժան օր ևս։ Նրա սաները համերգ էին տալու Նարվայի շրջանի բանվորների համար։*

*Դահլիճը լցվում էր համերգներին անսովոր հասարակությամբ՝ պատահական, խայտաբղետ։ Այստեղ կային մարդիկ, որոնց առաջին անգամ էր վիճակվել լսել լուրջ սիմֆոնիկ երաժշտություն։*

Դահլիճում աղմուկ էր։ Այդ բանը մանկավարժներին տագնապ էր ներշնչում. հանկարծ երեխաները չկարողանան գրավել ունկնդիրներին, ենթարկել իրենց։

Ահա խմբավարը գրավեց իր տեղը, բարձրացրեց ձեռքը, և դահլիճը լցվեց երաժշտությամբ։ Դա Բորոդինի «Դյուցազնական սիմֆոնիայի» առաջին մասն էր։ Նրա ներթափանցող, հաղթական, իրոք որ դյուցազնական ու հանդիսավոր հնչյունները հետզհետե աճում էին։ Երբ խմբավարի ձեռքն իջավ, դահլիճը ծափերից դողաց։ Բանվորները ծափահարում էին, գոչում էին «բրավո»։ Նրանք վեր էին թռչում տեղերից, հավաքվում բեմի մոտ և իրենց երեխաների շողացող դեմքերին նայելով չէին կշտանում։ Հիանալի ռուս կոմպոզիտորի երաժշտությունից ծնված մեծ



Նա երեխաներին պատմեց դպրոցի պատմությունը...

զգացմունքներն ավելի ամրացրին հայրերի ու զավակների մտերմությունը։

Շուտով դպրոցը տվեց իր առաջին շրջանավարտները։ Եվ շատ պատանիների ավարտական վկայականների մեջ դրված էին Իլյիչի նվիրած ծաղիկների չորացած պսակաթերթերը։

Անցնում էին տարիները։ Դպրոցի սաները գնում էին գործարաններում աշխատելու, ինստիտուտներում սովորելու։ Շատերն էլ ընդունվեցին կոնսերվատորիա։

Կոնսերվատորիան սպասում էր նաև Յուրա Գեյնիկին ու Սաշա Լավրենտևին։ Նրանք դպրոցն ավարտեցին 1941 թվականի գարնանը. բայց պատերազմն սկսվեց։ Լենինգրադը ծանր վիճակի մեջ էր։ Կոնսերվատորիայի փոխարեն պատանիները գնացին զինկոմիսարիատները և աշխարհազոր գրվեցին։

Ռազմաճակատ մեկնելու նախօրյակին, երեկոյան երկար նստեց Յուրան բաց դաշնամուրի առաջ։ Նա հերթով նվագեց ամեն ինչ։ Գեդիկեի մանկական պիեսներից սկսած, վերջացած կլասիկների դժվար, մեծ զգացմունքով լեցուն ստեղծագործություններով։ Յուրային թվում էր, թե ինքը հրաժեշտ է տալիս պատանեկությանը։ Նա չգիտեր, որ դա նրա կյանքի վերջին երեկոն էր։ Հենց առաջին մարտերում, հարազատ Լենինգրադը պաշտպանելու ժամանակ, զոհվեցին Յուրա Գեյնիկը և Սաշա Լավրենտևը. զոհվեցին որպես համարձակ, ազնիվ ու խիզախ մարդիկ...

Կյանքը դպրոցում թուլանում էր։ Փակվեցին դաշնամուրների կափարիչները, փոշու շերտով ծածկվեցին գործիքների պատյանները։ Աշնանն աշակերտներ դեռ գալիս էին. բայց քանի գնում, այնքան պակասում էին նրանց թիվը։ Նոյեմբերյան մի ցուրտ օր ոչ ոք չեկավ։ Լռեց դպրոցը։ Միայն գործիքների լարերն էին, որ տարբեր ձայներով լալագին զնգում էին մոտերքում ընկած ամեն մի արկի պայթյունից... Սակայն կյանքը դպրոցում, համենայն դեպս, առկայծում էր։ Դպրոցի հաստիքում երեք մարդ էին մնացել՝ դիրեկտորը, պահակը և հավաքարարը։

Սառնամանիքը կաշկանդել էր քաղաքը։ Մրսած ու սոված մարդիկ իրենց փոքրիկ վառարաններում այրում էին այն ամենը, ինչ ընկնում էր ձեռքները։ Դպրոցի դիրեկտոր Եկատերինա Պավլովնա Իզմայլովան սկսեց նկատել, որ անհետանում են նոտաները և նույնիսկ փայտյա գործիքները։ Եվ սարսափելի այդ ձմռանը դպրոցի դիրեկտորը, պահակն ու հավաքարարը, հանձն առան այն ժամանակվա համար գրեթե կարևոր մի գործ. նոտաների գրադարանը և լարային գործիքները տեղափոխել չորրորդ հարկ...

Մի անգամ գարնանը, երբ քաղաքից արդեն դուրս էր բերվել բնակչության հիմնական մասը, իսկ մնացած լենինգրադցիների վիճակը մի քիչ թեթևացել էր, դպրոց եկավ աշակերտուհի Իրա Կոլոբովը՝ նիհար և գունատ մի աղջիկ։ Եկատերինա Պավլովնան հազիվ ճանաչեց նրան և ուրախացավ, ինչպես հարազատին տեսնելիս։

— Տանյա Նիկոլաևնան էլ է քաղաքում,— ասաց Իրան։

Մի քանի օր հետո Կիրովյան շրջանի հիվանդանոցներից մեկը եկան երաժշտական դպրոցի սաները։

Վիրավորները կանգնել էին պատերին հենված, նստել էին տաբուրետկաների, աթոռների կամ ուղղակի մահճակալների վրա։ Դրսում համաչափ

և ծանրորեն պայթում էին արկերը։ Բոլորի հայացքներն ուղղված էին փոքրիկ ու նիհար աղջկա կողմը, որը նստած էր դաշնամուրի առաջ։ Աղջկա մատներն այնքան բարակ էին, որ թվում էր, թե ստեղներին դիպչելով կկոտրվեն։ Բայց ահա Իրան վերցրեց առաջին ակորդը, և հիվանդասենյակը լցվեց նուրբ ու թեթև հնչյուններով։ Իրան նվագում էր Շոպենի յոթերորդ վալսը։

Մարտիկներն ուրախանում էին։ Նրանց դեմքերը պայծառանում էին։ Նրանք հիշում էին այն ամբողջ լավը, որ կար ամեն մեկի խաղաղ կյանքում։ Հետո Իրան նվագեց մազուրկա և էլի մի վալս։ Հանկարծ նա վճռականորեն վեր կացավ, մոտեցավ Օ. Ա. Վորոպային ու վրա տվեց.

— Նվագեցե՛ք, նվագեցեք Շոպենի ռևոլյուցիոն էտյուդը. ես դեռ չեմ կարող, բայց դա այնքան պետք է նրանց, Օլգա Ալեքսանդրովնա...

Նվ աշխարհի ամենաուրախ ստեղծագործություններից մեկի հանդիսավոր մեղեդին կարծես թե շարժեց մարդկանց, ներշնչելով նրանց ուրախություն և համոզվածություն հաղթանակի նկատմամբ։

Պատերազմը վերջացավ, և դպրոցի կյանքը նորից մտավ իր հունի մեջ։ Վերադարձան ուսուցիչները, ավելի շատացան աշակերտները։ Հիմա էլ նրանց մեջ շատ կան առանձնապես ընդունակ, շնորհալի տղաներ ու աղջիկներ։

Սովետական կոմպոզիտոր Վ. Սորոկինի անունը հայտնի է Լենինգրադի սահմաններից հեռու։

1950 թվականի օգոստոսին Պրագայում, ծափահարությունների անլռելի որոտի տակ դաշնակահար Վալերի Վասիլևին, որն իր երաժշտական ուղին սկսել է Լենինգրադի դպրոցում, տրվեց Միջազգային կոնկուրսի լաուրեատի բյուրեղապակյա գավաթը...

Հիմա դպրոցում հինգ հարյուր աշակերտ կա։

Ալեքսանդր Անդրեևիչ Ֆոմինը մոտ ժամանակներս նորից եկավ «իր» երաժշտական դպրոցը։ Նա երեխաներին պատմեց դպրոցի պատմությունը, հիշեց Լենինի հետ հանդիպելու օրը և ասաց.

— Երևի Իլյիչը նայելով մեր երեխաներին արդեն այն ժամանակ տեսնում էր հարյուրավոր երաժշտական դպրոցներ ու կոնսերվատորիաներ, որոնք ստեղծված են մեր երկրում, տեսնում էր մեր հիանալի սովետական երաժիշտներին, որոնց այսօր ծափահարում է ամբողջ աշխարհը։

# ՉՄԵՌ ՊԱՊԻՆ

ՅԱՆԻՍ ՎԱՅԴԱՎՍ
(Լատիշ գրող)

Նկ. Հ. ՍԱՆԱՍԱՐՅԱՆԻ

Նոր տարվա նախօրյակին լրանում էր Անդրիսի հինգ տարին։ Ծննդյան օրվա առթիվ, հայրը մի խաղալիք նժույգ գնեց, որպեսզի Անդրիսը չնստի ցախավելի կոթի վրա։ Անդրիսին շատ դուր եկավ սպիտակ, սև խալերով փայտե ձին, և նա հաճախ «չափ» էր ընկնում բնակարանով մեկ։

Բայց Անդրիսը շատ հետաքրքրասեր էր, ամեն անգամ խաղալիք ստանալիս ստուգում էր այն։ Օրինակ, նա ծակեց իր նոր արջուկի փորը, իմանալու, թե ինչ կա նրա մեջ. նա քանդեց մոտոցիկլետի բենզինի բաքը, տեսնելու, թե այնտեղ որևէ բան չկա՞։ Նա այդպես վարվեց և փայտե նժույգի հետ։

Մի օր, երբ հայրը աշխատանքի էր գնացել, իսկ մայրը՝ խանութ, Անդրիսը սղոցեց նժույգի ոտքերը, որպեսզի իմանա փայտի՞ց, թե ոսկորից են դրանք, արյուն կգա՞, թե ոչ։ Սղոցելով և համոզվելով, որ ոտքերը փայտից են, Անդրիսը վախեցավ։ Ի՞նչ անել. նժույգը ոտքի չէր կանգնում։ Հայրը տուն եկավ և իմացավ եղելությունը։

— Քեզ համար այլևս խաղալիք չեմ գնի,— ասաց նա,— դու չես կարողանում կարգին երեխայի պես վարվել խաղալիքների հետ։

Քեռի Կրիշայի միջոցով նժույգի ոտքերը սոսնձով ամրացրին, բայց Անդրիսն այլևս նժույգի վրա չէր կարող նստել։ Բացի դրանից, նա ուներ մի երկյուղ ևս, որ կապված էր հենց նոր տարվա հետ։ Անցյալ տարի Ձմեռ պապին նրան նոր տարվա նվերներ բերեց, իսկ, ինչպես մայրիկն է ասում, այս տարի նա Անդրիսի պես չարաճճի երեխային ոչինչ չպետք է տա, գուցե և չգա նրա մոտ։ Բայց Անդրիսը սպասում էր նրան։ Ինքն իրեն ոտանավորներ էր արտասանում, որպեսզի պատրաստ լինի Ձմեռ պապիկին դիմավորելու։ Այնուհետև, նա խնդրում էր մորը Ձմեռ պապիկին հայտնել, որ ինքն արդեն ուղղվել է և էլ չարություն չի անի։

— Հայտնելը կհայտնեմ, բայց կլսի՞, կհամաձայնվի՞ Ձմեռ պապին, չգիտեմ,— ասում էր մայրը։

Վերջապես վրա հասավ հին տարվա վերջին գիշերը։ Հայրը, մայրը, պապիկն ու տատիկը նստել էին տոնականորեն զարդարված սեղանի

շուրջը։ Անդրիսը շարունակ դռան կողմն էր նայում, չի՞ լսվում արդյոք Ձմեռ պապիկի ոտնաձայնը։ Նրան ոչինչ չէր գրավում, անգամ շքեղ ու պայծառ տոնածառը։

— Անդրի՛ս, ժամանակն է քնելու,— ասաց հայրը։

— Իհարկե՛, էլ ինչու սպասել. Ձմեռ պապին երևի բարկացել է, չի գալու,— խայթեց մայրը։



Ձմեռ պապին Անդրիսին էր նայում...

Անդրիսը քիչ մնաց լաց լինի. շրթունքները ծգվեցին, աչքերը փայլեցին, բայց զսպեց իրեն։

— Թփռո՜ւ...— լսվեց պատուհանի տակ։

— Ձմեռ պապին եկա՞վ,— բացագանչեց Անդրիսը։

Իսկապես, նա արդեն կանգնած էր դռան շեմին։ Կարմիր գլխարկով, երկար, սպիտակ մորուքով, աստղանախշ, երկար վերարկուն հագին, մի մեծ տոպրակ շալակին։ Ձմեռ պապին Անդրիսին էր նայում ծիծաղկոտ-ուրախ աչքերով և ձեռքով մորուքի վրայից սրբում էր ձյունը։

— Բարի երեկո՛, Անդրի՛ս։

— Բարի երեկո,— պատասխանեց տղան։

— Սպասո՞ւմ էիր ինձ։

— Սպասում էի...

Ձմեռ պապին մեջքից իջեցրեց տոպրակը և նստեց։

— Դե Անդրի՛ս, ի՞նչ նոր բան ես սովորել,— հարցրեց նա։

Անդրիսն իրար հետևից արտասանեց նախօրոք անգիր արած ոտանավորները։

— Լավ, այդ գիտես, այժմ ասա ինձ, ինչպե՞ս է այն նժույգի վիճակը, որ հայրդ էր նվիրել։

Ինչ պատասխաներ, եթե Ձմեռ պապին հարցնում է, ուրեմն գիտե եղելությունը։

— Ոտքերը սղոցել եմ,— ամոթահար խոստովանեց Անդրիսը։

— Ինչ ես կարծում, լա՞վ ես արել։

— Ոչ։

— Էլ խաղալիքներդ չե՞ս փչացնի։

— Չեմ փչացնի։

— Դե, Անդրի՛ս, վստահում եմ, խոստումդ կատարիր։

— Կկատարեմ...

— Առայժմ արժանի չես, բայց որ խոստանում ես ուղղվել, ես քեզ նվերներ կտամ։

Եվ Ձմեռ պապին տոպրակից հանեց մի շողշողուն ավտոմեքենա։ Այդպիսի մեքենա Անդրիսը վաղուց էր ուզում ունենալ։

Անդրիսին քաղցրավենիներ էլ նվիրեց։ Այդ բոլորից հետո Ձմեռ պապին շնորհավորեց բոլորի նոր տարին և դուրս գնաց։

Մյուս օրը, կիրակի առավոտյան Անդրիսը ավտոմեքենան տարավ քեռի Կրիշյային ցույց տալու։ Քեռին տանը չէր, քեռակինն էլ զբաղված էր։ Անդրիսը մենակ կանգնել էր սենյակում։ Նա սկսեց քեռականոջ տված խաղալիքները դասավորել ավտոմեքենայում և սենյակից սենյակ տեղափոխել։ Վերջապես դրանից էլ ձանձրացավ։ Նա չորս կողմ նայեց և հանկարծ կախարանի վրա նկատեց Ձմեռ պապի հագուստը։ Մոտեցավ։ Այստեղ էր նաև մորուքը։ «Ինչպե՞ս է, որ Ձմեռ պապին թողել է այն»։ Անդրիսը վերցրեց աստղանախշ վերարկուն ու սպիտակ փափուկ մորուքը։ «Պետք է փորձել», մտածեց Անդրիսն ու սկսեց հագնըվել։ Ահա, լավ է, հիմա էլ գլխարկը. մի քիչ մեծ է, ոչինչ, կհարմարվի։

Հանկարծ դուռը բացվեց, և ներս մտավ քեռի Կրիշյան։ Նրանք լուռ նայում էին իրար։

— Չարաճճի՛, որտեղի՞ց գտար մորուքը, ինչո՞ւ ես հագել դրանք։

— Ուզում եմ տեսնել ինչպիսին կլինեմ մորուքով։

— Ապա, ի՞նչպիսին ես...

— Ճիշտ այն Ձմեռ պապիկի պես, որ նոր տարվա օրը մեզ մոտ եկավ։

— Այն դեպքում, Անդրի՛ս, դու եկող տարի կարող ես որպես Ձմեռ պապիկ շրջել երեխաների մոտ։

— Բայց ես Ձմեռ պապիկ չեմ։

— Քո կարծիքով, Ձմեռ պապիկի և քո մեջ ի՞նչ տարբերություն կա, երբ մորուք դու էլ ունես։

— Օ՜, նա գիտե երեխաների բոլոր արարքները։

— Իսկ դու չէի՞ր իմանա, եթե երեխաների ծնողները պատմեին քեզ։

— Կիմանայի։

— Տեսնո՞ւմ ես, ուրեմն եկող տարի ինձ օգնական կլինես։

— Քեռի, մի՞թե դու էիր Ձմեռ պապին։

— Ես... իսկ դու, Անդրիս, չճանաչեցի՞ր ինձ։

— Չճանաչեցի,— Անդրիսը ամոթխած խոնարհեց գլուխը։

Թարգմ. ՄԻՔ. ՀԱՐՈՒԹՅՈՒՆՅԱՆ

# Բ Ո Ւ Ք Ը

Պ. ՄԱՐՏԻՐՈՍՅԱՆ

Նկ. Ա. ԶԱՔԱՐՅԱՆԻ

Ձյունախառն քամին սաստկանում էր։

— Բուք է լինելու, ետ դառնանք,— ասաց Տիգրանը և, պատասխանի չսպասելով, փոխեց դահուկների ուղղությունը։

Մյուսները հետևեցին նրան։ Բայց վերադառնալը հեշտ չէր։

— Ոււո՜ւ...— սուլում էր քամին ու ձյունը ծեփում նրանց դեմքերին։

Դահուկավորները հաճախ կանգ էին առնում։

Բուքն սկսվեց, և առաջ շարժվելը բոլորովին անհնարին դարձավ։

— Վերադառնալ չենք կարող, քամին դիմացից է փչում, լավ կլինի առաջ գնանք,— մոտենալով ավագ ջոկատավարին, նկատեց Վահանը։

Տիգրանը դժվարանում էր որոշակի մի բան ասել։ Առաջ գնալը նա վտանգավոր էր համարում։ Չէ՞ որ իրենց գյուղը հեռու էր, և բուքը կարող էր ավելի մոլեգնել. իսկ երեկոն մոտենում էր։ Տիգրանն ուզում էր, որ վերադառնային Սարալանջ, գիշերեին այնտեղ, և երբ բուքը դադարեր, շարունակեին ճանապարհը։ Բայց շուտով նա համոզվեց, որ ոչ մի կերպ հնարավոր չէ առաջ գնալ, դահուկները նորից դարձրեց դեպի իրենց գյուղ՝ Ձորաշեն։

— Չվախենա՛ք, քամին մեր գյուղի ուղղությամբ է փչում, շուտով տանը կլինենք,— ասաց Տիգրանը և առաջ անցավ։

Հետզհետե բուքն ավելի ուժեղանում ու սարսափելի էր դառնում։ Ճանապարհը ծածկվում էր քամու կուտակած ձյան շերտերի տակ։ Դա ավելի մեծացրեց Տիգրանի անհանգստությունը։ «Մընում է միայն ճիշտ պահպանել քամու ուղղությունը», վճռեց նա։ Այդ պահին Տիգրանի ականջին հասավ Գուրգենի ձայնը.

— Կմոլորվենք, վախենում եմ։

«Վախենում եմ», կրկնեց նա Գուրգենի խոսքերը և կանգ առավ։

— Քիչ մնաց, դիմացեք,— ոգևորում էր Տիգրանը, երբ պիոներները մոտեցան իրեն։

— Ես երկու րոպե էլ չեմ դիմանա, միևնույն է...— լացակումած ձայնով ասաց Գուրգենը և թուլացած ընկավ ձյան վրա։

— Ես էլ չեմ կարող,— ասաց Գեղամը ու նստեց Գուրգենի կողքին։

Կատաղած քամին ձյունը բերում ու կուտակում էր նրանց շուրջը։ Գուրգենն ու Գեղամը կիսով չափ արդեն ծածկվել էին ձյան տակ։ Տիգրանն այլևս չկարողացավ համբերել։



...բուքն ավելի... սարսափելի էր դառնում...

— Մի՞թե դուք այդքան թուլամորթ եք ու վախկոտ։ Նստել չի կարելի, ձյան տակ կմնանք, կցրտահարվենք, պիտի շարժվել,— ասաց Տիգրանը ու բարձրացրեց նրանց։

«Եթե մեկն ու մեկին մի բան պատահի, ի՞նչ պատասխան պիտի տամ,— մտածում էր Տիգրանը,— չէ՞ որ նրանց ես եմ բերել...»։

Այդ մտքերին որպես պատասխան ոռնում էր բուքն ու գալարվում նրանց շուրջը, ասես ուզում էր նրանց պոկել գետնից ու տանել հեռու, հեռո՜ւ...

Տիգրանն այդ մտքերից դեռ չէր ազատվել, երբ հանկարծ ոտքերի առաջ գետին տեսավ, և նրան թվաց, թե բուքը կտրվեց։ Նույն բանը զգացին նաև մյուսները և թեթևացած շունչ քաշեցին։

Բայց դա կարճատև ուրախություն էր։ Բուքը չէր կտրվել. Նրանք հասել էին մի փոքրիկ բարձունքի, որի վրայից քամին քշել-տարել էր ձյունը։

Տիգրանի համար արդեն պարզ էր, որ քամին փոխել էր իր ուղղությունը, մոլորեցրել իրենց, բայց թե որտե՞ղ են գտնվում, չգիտեր։ Դա էր պատճառը, որ նա վճռեց այլևս առաջ չշարժվել և մնալ այդտեղ։ Բացի այդ, բարձունքի վրա ավելի ապահով էր գոնե նրանով, որ բքից ազատ կլինեին, իսկ ցրտին ու քամուն մի կերպ կարելի է դիմանալ։ Բոլորն էլ հոգնած էին. անմիջապես ոտքերից արձակեցին դահուկները և նստեցին։

Քիչ հետո բոլորովին մթնեց։ Մութ էր շրջակայքը, մութ ու ահավոր։ Խելակորույս քամին երբեմն մեղմանում, ապա նոր թափ առած հարձակվում էր նրանց վրա, քաշքշում այս ու այն կողմից, ասես ուզում էր ծվատել...

— Այսպես չի լինի,— լսվեց Տիգրանի ձայնը,— դուք մնացեք այստեղ, իսկ ես ու Վահանը գնանք ուսումնասիրելու մեր շուրջը. գուցե ավելի հարմար տեղ գտնենք։

Նրանց գնալուց հետո Գուրգենն այլևս չհամբերեց և ասաց.

— Սա էլ քեզ փորձի փոխանակում։ Կմեռնենք և մինչև գարուն մեր դիակները չեն էլ գտնի։

— Տաս օր արձակուրդ են տվել, չեն էլ թողնում, որ մարդ հանգստանա,— Գուրգենին ընդհատեց Գեղամը,— ո՞վ է տեսել, որ էսպիսի օր գյուղից գյուղ գնան, ինչ է, թե պիոներական դրուժինայի փորձ պիտի ուսումնասիրեն։ Նրանց դպրոցում ոչինչ էլ չկա։

— Ինչո՞ւ չկա,— միջամտեց Շիրակը,— Նրանք կենդանի անկյուն ունեն, ջերմոց էլ, դպրոցական ռադիո-հանգույց էլ, իսկ մենք դրանցից ոչ մեկը չունենք և սովորելու շատ բան ունենք նրանցից։

— Ես հիմա միայն մի բան գիտեմ,— նորից խոսեց Գուրգենը,— մենք այսօր կմեռնենք և դա ուրիշների համար փորձ կլինի, դա՛ս էլ, դեռ մի բան էլ ավելի։

— Ինչ ես լացկան երեխայի նման նվնվում, միայն քեզ նման վախկոտը կարող է մեռնելու մասին մտածել։

Վերադարձան Տիգրանն ու Վահանը։

—Տղանե՛ր, ելեք, քարայր ենք գտել։

Բոլորը մեկ մարդու նման վեր թռան տեղերից և գնացին նրանց հետևից։

Քարայրում տեղավորվելուց հետո Շահենը բարձրաձայն ասաց.

— Բուք չէ, երկրաշարժն էլ մեզ ոչինչ անել չի կարող,— և դառնալով Գուրգենի կողմը, ավելացրեց.— Գուրգեն, բա՛ ասում էիր, որ այսօր պիտի մեռնենք...

Բոլորը ծիծաղեցին։

— Եկեք հերթով հետաքրքիր բաներ պատմենք, որ ոչ մեկիդ քունը չտանի, քնելն արգելվում է, կմրսենք և կհիվանդանանք,— ասաց Տիգրանը և առաջինը ինքն սկսեց։

Նրանց ծիծաղից քարայրը զրնգում էր։

— Գեղա՛մ, մի բան էլ դու պատմիր, ինչո՞ւ ես լռել, հերթը քոնն է։

Տիգրանի խոսքերը մնացին անպատասխան։ Գեղամը թիկնել էր քարայրի պատին ու նստած տեղը քնել։ Արթնացրին, բայց նա պատմել չկարողացավ. ցրտից դողում էր։

Վահանի առաջարկով սկսեցին խմբական երգեր երգել։

Ուշ գիշեր էր արդեն։ Տարված իրենց պատմություններով ու երգերով, նրանք չէին նկատել, որ բուքը դադարել էր։

— Ձայն չի լսվում, բուքը կտրվել է,— հանկարծ ոտքի կանգնելով ասաց Տիգրանը և դուրս եկավ քարայրից։

Նրա հետևից դուրս եկան մյուսները։

—Ջա՜ն, ջա՜ն մեր գյուղից շատ հեռու չենք, եկեք գնանք,— աղաղակեց Գեղամը։

— Որտեղի՞ց իմացար։

— Չե՞ք տեսնո՞ւմ մեր գյուղի լույսերը։

Բոլորը շրջվեցին Գեղամի ցույց տված կողմը։ Նրանց ուշադրությունը գրավեցին շողշողացող լույսերը, որոնք շատ հեռու չէին։

— Ախր մեր գյուղի մոտ այսպիսի քարայր չկա,— վրա բերեց Վահանը։

— Ինչ գյուղ, դրանք գայլեր են,— երկար նայելուց հետո ասաց Տիգրանը,— չե՞ք տեսնում, շարժվում են։

Գայլերի անունը լսելուն պես Գեղամը մի այնպիսի ճիչ արձակեց, որ եթե գազանները լսեին, գուցե լեղաճաք լինեին։

— Մի՛ վախենա,— գայլերից ազատվելը հեշտ է,— ասաց Տիգրանը և մոտեցավ Գեղամին։ Բայց նրա լեզուն արդեն կապ էր ընկել։

— Ընկեր Տիգրան, փամփուշտ շատ կա, չէ՞,— ասաց Վարդգեսը և Տիգրանի որսորդական հրացանը, որ իր մոտն էր, մեկնեց նրան։

Տղաներն ասես նոր միայն զգացին հրացանի գոյությունը։

— Ա՛յ Վարդգես, բա էս մթանը նշան բռնել կլինի,— ասաց Տիգրանը,— գայլերի դեմ ուրիշ բանով պիտի կռվենք։ Հիմա մտնենք քարայր։

Տիգրանն իր դահուկների ձեռնափայտերը ջարդեց և գրպանից հանեց իր հետ վերցրած տետրը։ Իրենց տետրերը տվեցին նաև մյուսները։ Ապա նա վերցրեց չորս ձեռնափայտ, ծայրերին կապեց մի քանի փայտի կտոր ու թուղթ և դրանք տվեց Վահանին, Վարդգեսին, Շահենին, իսկ չորրորդը վերցրեց իրեն։ Հետո գրպանից հանեց լուցկին և պատրաստ պահեց ձեռքում։

— Ո՜ւ, ո՜ւ...— շատ մոտիկից լսվեց գայլերի ոռնոցը։

Ոհմակը նկատել էր և տղաների եկած ուղղությամբ գալիս էր դեպի քարայր։ Երբ գայլերն ավելի մոտեցան, Տիգրանը վառեց լուցկին և կպցրեց ձեռնափայտի վրա փաթաթած թղթերը։ Հետո գոռում-գոչումով քարայրից դուրս թռան Տիգրանը, Վահանը, Շահենը, Վարդգեսը և վազեցին դեպի գայլերը ու կրակները նետեցին նրանց վրա։ Ապա Տիգրանը հրացանով երկու անգամ կրակեց փախչող գայլերի ուղղությամբ։

Քիչ հետո ամեն ինչ խաղաղվեց, և մինչև լուսաբաց էլ գայլեր չերևացին։

— Գեղամը որ չլիներ, գայլերը մեզ կհոշոտեին,— երբ նորից քարայր մտան ասաց Շահենը և ծիծաղեց։

— Այնպես էր կպել պատին, որ գայլերը դժվար թե կարողանային պատից պոկել,— ավելացրեց Վարդգեսը։

Բոլորը փռթկացրին։

...Արդեն լավ լուսացել էր, և պարզ երևում էր շրջակայքը։ Նրանք վերցրին դահուկները ու դուրս եկան քարայրից։

— Բը-բը, բա, որ գը-գը-գայլերը գը-գը-գան, — վախից կակազելով ասաց Գեղամը։

— Բա էս հրացանը ինչո՞ւ համար է, խոմ հիմա էլ մութ չի, որ նշան չբռնվի։

Երբ տղաները դուրս եկան քարայրից սարսափից ետ-ետ քաշվեցին։ Նրանք կանգնած էին անդընդախոր ձորի վրա կախված ժայռի պռնկին։ Տիրեց կարճատև լռություն։

— Եթե քարայրին չհանդիպեինք և էլի առաջ գնայինք, բոլորս էլ ձորն էինք թափվելու,— ասաց Տիգրանը և զարմացած նայեց տղաներին։

Շրջակայքում ոչինչ չէր երևում, բացի սպիտակ անսահմանությունից։ Նրանք անմիջապես չկարողացան կողմնորոշվել և պարզել, թե որտեղ են գտնվում։

— Ընկեր աշխարհագետ,— Շահենին դիմեց Վարդգեսը,— միշտ ասում էին, թե մեր շրջանի տեղագրությանը լավ ծանոթ ես, դե՛, քեզ տեսնենք։

— Ես արդեն գիտեմ, թե որտեղ է գտնվում մեր գյուղը, սպասում եմ, որ դուք ասեք։

— Գտա՛, գտա՛,— քիչ հետո լսվեց Գուրգենի ձայնը։

— Ի՞նչը։

— Մեր գյուղի տեղը։ Նայեք մեզանից ձախ, ա՛յ, հեռվում երևում է Լենինականի մսի-պահածոների կոմբինատը, իսկ դեպի աջ՝ հին բերդի ավերակները, որոնք մեր գյուղից էլ են երևում։

— Ճիշտ է,— ձեռքը դիմացը պարզելով, ասաց Տիգրանը,— տեսե՛ք, նրանք էլ Գետքի կոլտնտեսության ջրաղացի ծառերն են։ Ուրեմն մեր գյուղը գտնվում է մեզանից հյուսիս-արևմուտք, մոտավորապես չորս կիլոմետր հեռավորության վրա։

— Պա՛հ, էս որտեղ ենք ընկե՜լ,— զարմացած գոչեց Շիրակը։



— ո՜ւ, ո՜ւ...— լսվեց գայլերի ոռնոցը։

Միայն Գեղամը չէր լսում նրանց։ Նա վախից կողքերն էր նայում, թե հանկարծ գայլերը չգա՞ն։

Կողմնորոշվելուց հետո նրանք հագան դահուկները և շարժվեցին գյուղի ուղղությամբ։ Շատերի ձեռքին ձեռնափայտ չկար, և նրանք դժվարությամբ էին առաջ գնում։

— Ես սոված եմ, էլ չեմ կարող գալ,— ասաց Գեղամը և կանգնեց։

— Ի՞նչ է, իսկ մենք կո՞ւշտ ենք... ձայնեցին այս ու այն կողմից։

— Չես կարող գալ, մնա և գայլերի բաժին դառիր,— ասաց Վահանը։

Գայլի անունը լսելուն պես, Գեղամը ուժ տվեց ձեռքերին ու ոտքերին։ Մի քիչ հետո լսվեց նրա ճիչը.

— Գա՛յլ...

Բոլորը նայեցին Գեղամի ցույց տված կողմը: Գայլը շատ հեռու չէր. անշարժ կանգնել էր ձյան վրա և անտարբեր նայում էր տղաների կողմը:

Տիգրանն անմիջապես ուսից իջեցրեց որսորդական հրացանը և գնաց դեպի գազանը: Երբ նրանց միջև հիսուն քայլի չափ տարածություն էր մնացել, գայլն առաջ նետվեց: Տիգրանը ծունկ չոքեց և նշան բռնեց: Գնդակը չվրիպեց. գայլը վայր ընկավ, բայց նորից ելավ և օրորվելով առաջ եկավ: Լսվեցին հրացանի հաջորդ կրակոցները: Երկրորդ և երրորդ կրակոցները վրիպեցին: Միայն չորրորդ կրակոցից հետո գայլը փռվեց ձյան վրա:

Բոլորը մոտեցան վիրավոր գայլին: Գազանը թույլ շնչում էր:

— Մոտ արի, ա՛յ Գեղամ, ինչո՞ւ ես այդքան հեռու կանգնել, սատկած գայլի՞ց էլ ես վախենում,— քրքջաց Վարդգեսը և բռնեց գայլի պոչից:

— Սատկած չէ, չեք տեսնում, շնչում է,— ասաց Տիգրանը և ջարդեց ձեռնափայտերից մեկն ու մի կտորը հորիզոնական դիրքով տարավ գայլի բերանը, ապա ամուր կապեց, որ փայտը չընկնի:

Հետո Տիգրանը հավաքեց մի քանի գոտի, միացրեց իրար և մի ծայրը կապեց գայլի հետևի ոտքերին, իսկ մյուսը՝ ջարդված ձեռնափայտի մյուս կտորի մեջտեղից:

Քիչ հետո դահուկավորները ձյունածածկ լանջերով իրենց գյուղն էին իջնում, երկու հոգով քաշ տալով ծանր վիրավոր գազանին:

Ներքևում, ձորի մեջ փռված էր գյուղը, որը մոր նման կանչում էր իր մոլորված զավակներին:



## ԱՅՆՏԵՂ, ՈՒՐ ԺՈՂՈՎՈՒՐԴՆ Է ՏԵՐԸ



*Սովետական Բանակը 1944—45 թվականներին ֆաշիստական լծից ազատագրեց մի շարք եվրոպական երկրներ: Այդ երկրների բանվորներն ու գյուղացիներն իրենց փառապանծ պարտիաների ղեկավարությամբ ստեղծեցին ժողովրդա-դեմոկրատական իշխանություն:*

*Այս տարվա հունվարին լրանում է Ալբանիայում ու Հունգարիայում ժողովրդական ռեսպուբլիկա հռչակելու տասը տարին:*

*Որքա՞ն են փոխվել, զարգացել անցյալում հետամնաց, ստրկացած այդ երկրները:*

*Հունգարիայում և Ալբանիայում կառուցվել են բազմաթիվ գործարաններ ու էլեկտրակայաններ: Այժմ էլ շարունակվում է ուրիշ շատ գործարանների շինարարությունը: Այդ երկրներում արդյունաբերությունը հիմա մի քանի անգամ ավելի արտադրանք է տալիս, քան մինչև երկրորդ համաշխարհային պատերազմը:*

*Հունգարիայի և Ալբանիայի գյուղատնտեսությունն ընթանում է կոլեկտիվացման ուղիներով: Այնտեղ լուրջ ուժ են դառնում գյուղատնտեսական կոոպերատիվները, պետական տնտեսությունները:*

*Հունգարիայում և Ալբանիայում մեծ աշխատանք է տարվում առողջապահության, ժողովրդական լուսավորության ու կուլտուրայի բնագավառներում:*

*Այդ երկրներում ժողովուրդը խանդավառ կերպով կառուցում է սոցիալիզմի հիմքերը, պայքարում ամբողջ աշխարհի խաղաղության ամրապնդման համար:*





## ՊԱՐՏԻԶԱՆ ԲԵՆԿՈՅԻ ԵՐԳԸ

(Հատված պոեմից)

*ՖԱԹՄԻՐ ԳՅԱՏԱ*

Աշխատանքային օրն է վերջանում,
Ջրերի վրա երգն է սավառնում,
Նվագն է հնչում գրկում լեռների,
Ուրախ պարում է խումբն աղջիկների:
Լսիր, ինչպես են ջրերը ծփում,
Ինչպես են ծառերն անուշ սոսափում,
Խաղաղություն է իջել սարերին,
Եվ երգ է ասում բանվոր Մինուշին.
«Ես մեր օրերի մասին եմ երգում,
Ճանապարհների մասին հեռավոր,
Մեր ազատ կյանքի մասին եմ երգում,
Որ ձեռք ենք բերել մարտում ահավոր:
Հայրենի երկրի մասին եմ երգում,
Բարեկամության և խաղաղության,
Կրեմլի աստղերի մասին եմ երգում,
Որ վառ են, ինչպես աստղերը գարնան»:
Ազատ, երջանիկ երկրի վերևում
Երգում է քամին, փարվում ամենքին,
Եվ ամեն մի գյուղ գարուն է բերում
Ռուսիայի քամին, Ռուսիայի քամին:

## ՊԱՐՏԻԶԱՆԱԿԱՆ ԵՐԳ

Կռվի ելավ էնվեր Խոջան
Տիրանայի փողոցներում:
Բյուր պարտիզան քաջեր նրան
Օգնում էին այդ պայքարում:
Նա քսան օր, քսան գիշեր
Թշնամու դեմ կռվեց այնտեղ.
Դղրդում էր տներ, քաղեր
Թեժ մարտերով արյունահեղ:
Քսանմեկերորդ օրը հասավ,
Տվեց էնվերն ազդանշան,
Զորքն հարձակման ահա անցավ,
Որ գրավի ողջ Տիրանան:
«Քաջե՛ր, մեռնենք և կամ հաղթենք:
Առյուծաբար նետվենք կռվի՛,
Որ մինչև լույս մենք ազատենք
Մայրաքաղաքն Ալբանիայի»:
Եվ երբ բացվեց լույսը բարի,
Չկար զորքը ֆաշիստական.
Հինգ հարյուր մարդ վերցրին գերի,
Երեք հարյուրն անշունչ ընկան:
Ցնծաց ազատ աշխարհն համայն,
Հղեց ողջույն եղբայրական.
«Փա՜ռք ձեր հմուտ զորավարին,
Ալբանական ամբողջ երկրին»:

## Պ Ր Ի Շ Տ Ի Ն Ա

(Հատված պոեմից)

*ԼԱԶԱՐ ՍԻԼԻՔԻ*

Պա՛րտիա, պա՛րտիա, դու ընդմիշտ մեր սրտերում ջերմ սիրով
Այնքան հույսեր ես վառել, խիզախություն ու կորով,
Պա՛րտիա, դո՛ւ ես աճեցրել հերոսներին մեր արի,
Մեզ ուսուցել, որ քայլենք միշտ առջևից շարքերի՝
Քայլենք երգը շուրթներիս, երգ, որ տանի մեզ առաջ,
Լինի հզոր և ազդու, ինչպես մարտի հաղթ շառաչ,
Երգ, որ լինի հրեղեն և սավառնի մեր գլխին,
Փառաբանի խնդություն, ազատություն մարդկային:
Պա՛րտիա, քե՛զ ենք վստահել մենք հավատով անսասան
Աշխատանքում, պայքարում, բովում կյանքի ու մահվան...
Մեր բաղձանքը կատարվեց. ռուս արծիվներ մենք տեսանք
Կանաչ հովտի վերևում, որ մռայլ էր շարունակ:
Այդ օրը լավ ենք հիշում. Պրիշտինայի երկնքում
Կարմիր աստղը թևերին՝ օդանավն էր սավառնում:
Ազատության ու կյանքի թռիչքն էր դա հաղթական.
Ազատությունը եկավ, ծագեց արև փրկության:
Երբ ճառագեց մեր երկրում հնգաթև աստղը բոսոր,
Մենք մոռացանք մեր կրած տառապանքները բոլոր,
Մոռացանք մահ ու կորուստ, վիշտ ու զրկանք, ցուրտ ու քաղց,
Եվ մեր հոգնած աչքերում կյանքի հույսը շողշողաց.
Օդանավը սավառնում, ճախրում էր պարզ երկնքում,
Հաղթանակի սիմվոլը՝ մուրճ ու մանգաղ էր գծում...

## ՄԱՄԻՆՅԱՆ ԿՈԼԵԿՏԻՎԻ ԵՐԳԸ

*ԱԼԵՔՍ ՉԱՉԻ*

Բոլորը մերն է, հնձի՛ր, Նիմեթե,
Մեր գործն արդար է, հնձի՛ր, Նիմեթե:
Ինչ որ մեզ համար երգ է, քաղցրություն,
Թշնամու համար դառն է, ինչպես թույն:
Նիմեթե, հնձիր արագ ու սիրով,
Որ կյանքն էլ նայի քեզ քաղցր աչքով:
Կյանքի ոսկին է մեր հացը առատ,
Եկ՝ հացը խառնենք երգի հետ զվարթ,
Հնձի՛ր, Նիմեթե. իր կոմբինատում
Բանվորն է հիմա հացի սպասում,
Նա՛ էլ երկիրն է ուզում շենացնել,
Մայր երկրին գույն-գույն շորեր հագցրնել:

*Թարգմ. Գ. ՄԻՔԱՅԵԼՅԱՆ*

## ԱՔԱՂԱՂԸ ԵՎ ԹՅՈՒՐՔԱԿԱՆ ՍՈՒԼԹԱՆԸ

(Հունգարական ժողովրդական հեքիաթ)

*Ժամանակով մի աղքատ կին էր ապրում։ Նա մի աքաղաղ ուներ։ Աղբանոցում քուջուջ անելիս աքաղաղը հանկարծ մարգարիտ գտավ։ Հենց այդ ժամանակ այդտեղով անցնում էր թյուրքական սուլթանը։ Աքաղաղի մոտ մարգարիտ տեսնելով սուլթանն ասաց.*

*— Ինձ տուր քո մարգարիտը։*

*Աքաղաղը փքվեց ու ասաց.*

*— Չե՛մ տա, մարգարիտը տանտիրուհուս էլ պետք կգա։*

*Բայց սուլթանը ուժով խլեց մարգարիտը, տարավ իր տուն և պահեց գանձարանում։*

*Զայրացավ աքաղաղը, թռավ ցանկապատին և կանչեց.*

*— Ծուղ-րու-ղո՜ւ սուլթա՛ն, ետ տուր իմ թանկագին մարգարիտը։*

*Որպեսզի աքաղաղի ձայնը չլսի, սուլթանը*

փակվեց իր պալատում և հրամայեց վեզիրներին, որ ամուր փակեն պատուհաններն ու դռները։

Այդ ժամանակ աքաղաղը թռավ պատուհանին, սկսեց կտցով խփել ապակիներին և թևերը թափահարելով կանչել.

— Ծուղ-րու-ղո՜ւ, սուլթա՜ն, ետ տուր իմ թանկագին մարգարիտը։

Զայրացավ սուլթանը և հրամայեց վեզիրին.

— Վեզի՛ր, վեզի՛ր, բռնիր աքաղաղին և գցիր ջրհորը, որ էլ չկանչի։

Բայց աքաղաղը ջրհորում էլ սկսեց կանչել.

— Ջո՛ւր, ջո՛ւր, լցվիր իմ փորը։

Եվ ջրհորի ջուրն ամբողջովին լցվեց աքաղաղի փորը, որից հետո աքաղաղը հորից դուրս թռավ, բարձրացավ սուլթանի պատուհանը և զիլ ձայնով կանչեց.

— Ծուղ-րու-ղո՜ւ, սուլթա՛ն, ետ տուր իմ թանկագին մարգարիտը։

Այս անգամ սուլթանն ավելի բարկացավ և իր վեզիրին հրամայեց.

— Գնա՛, վեզիր, բռնիր աքաղաղին և այս անգամ գցիր թեժ վառարանի մեջ։

Վեզիրը գնաց, բռնեց աքաղաղին և գցեց վառարանը։ Բայց աքաղաղը նորից սկսեց կանչել.

— Ջո՛ւր, ջո՛ւր, դուրս թափվիր փորիցս և հանգցրու կրակը։

Մի ակնթարթում ջուրը լցվեց վառարանը և կրակը մարեց։ Կարծես աքաղաղին ոչինչ չէր պատահել. Նա դուրս եկավ վառարանից, նորից թռավ պատուհանին և բարձր ձայնով սկսեց կանչել.

— Ծուղ-րու-ղո՜ւ, սուլթա՛ն, ետ տուր իմ թանկագին մարգարիտը։

Սուլթանը բարկությունից կատաղեց և հրամայեց.

— Շուտ արա՛, վեզիր, գնա բռնիր այդ անամոթին և գցիր փեթակի մեջ, թող մեղրաճանճերը քրքրեն նրան։

Վեզիրը բռնեց աքաղաղին և գցեց փեթակի մեջ։ Բայց աքաղաղը այս անգամ էլ հնարը գտավ։

— Մեղունե՛ր, մեղունե՛ր, թաքնվեք իմ փետուրների մեջ, մտեք թևերիս տակ։

Մեղուները մտան փետուրների մեջ, թաքնվեցին փետուրների տակ։ Այն ժամանակ աքաղաղը նորից դուրս եկավ ու թռավ սուլթանի պատուհանին։

— Ծուղ-րու-ղո՜ւ, սուլթա՛ն, ետ տուր իմ թանկագին մարգարիտը։

Սուլթանը կատաղությունից չգիտեր ինչ աներ։

— Գնացե՛ք,— բղավեց նա,— բերեք այդ անբռեսին. դնեմ նրան վարտիքիս մեջ, նստեմ վրան ու ճխլեմ։

Վեզիրը բռնեց աքաղաղին։ Սուլթանը նրան գցեց իր լայն վարտիքի մեջ ու նստեց վրան։ Ո՜վ զարմանք, աքաղաղը նորից աղաղակեց.

— Փետուրնե՛ր, ի՛մ փետուրներ, թևե՛ր, ի՛մ թևեր, բաց թողեք բոլոր մեղուներին, թող նրանք քրքրեն սուլթանին։

Մեղուները դուրս եկան և բոլոր տեղերից սկսեցին խայթել սուլթանին։

Սուլթանը հանկարծակիի եկավ մեղուների



խայթոցից, խենթի նման վեր թռավ և սկսեց թռչկոտել ու ճչալ.

— Վա՜յ, վա՜յ, դժոխքը գնա այդ աքաղաղը։ Տարեք նրան գցեք իմ գանձարանը, թող նա այնտեղ գտնի իր անիծյալ մարգարիտը։

Վեզիրները տարան աքաղաղին և գցեցին սուլթանի գանձարանը։

Այնտեղ էլ նա նորից սկսեց կանչել.

— Փո՛ր, ի՛մ փոր, քո մեջ հավաքիր սուլթանի այս բոլոր գանձերը։

Այդ խոսքերի վրա սուլթանի երեք լիքը տաշտ գանձերը լցվեցին աքաղաղի փորը։

Այդ ժամանակ աքաղաղը դուրս եկավ, տարավ այդ բոլորը տվեց իր տանտիրուհուն։ Տանտիրուհին այդ բոլոր գանձերը բաժանեց աղքատներին, մի քիչ էլ իրեն վերցրեց։ Եվ ասում են, որ մինչև այսօր էլ նա ապրում է ուրախ ու երջանիկ, եթե չի մեռել։

Թարգմ. Հ. ՄՈՒՐԱԴՅԱՆ

# ՓԵՍՏԻՎԱԼԸ ԴՊՐՈՑՈՒՄ

Բ. ԱԶԻԶՅԱՆ

Լուսանկար՝ Մ. ՔՈՉԱՐՅԱՆԻ

*Կիրակի առավոտ է։ Արեգակի թույլ, բայց հաճելի շողերը ջերմացնում են մարդկանց։*

*Պիոներներն իրենց ծնողների հետ շտապում են դպրոց։ Աշակերտական գեղեցիկ համազգեստների վրա ժպտում են կարմիր վզկապները։ Դպրոցի բակում նրանց է ողջունում փողային նվագախումբը։*

*Քիչ հետո սկսվում է երգն ու պարը։ Դպրոցականների հետ միասին պարում են հյուրերն ու ծնողները։*

*— Ուշադրությո՜ւն, ըստ ջոկատների, դրուժինա, շարվի՛ր,—բարձր ու զիլ հրահանգեց դրուժինայի խորհրդի նախագահ Հ. Ամիրխանյանը։*

*Զեկուցումներից հետո նվագախումբը կատարեց «Պիոներական քայլերգը», որին ձայնակցեց ողջ դրուժինան։ Երգում էին նաև հյուրերը։*

*Այսպես բացվեց Երևանի Ն. Կ. Կրուպսկայայի անվան դպրոցի փեստիվալը։ Ֆեստիվալի առաջին բաժինն սկսվեց չորս հարյուր պիոներների գեղեցիկ ու համաչափ մարզահանդեսով։ Դրան հաջորդեցին սպորտ խաղերն ու մրցումները։*

*Դիմացի պատշգամբներից շատ դիտողներ ծափահարում ու հրճվում էին պիոներների հաջողություններով։ Նրանցից մի քանիսը գրկել էին փոքրահասակ երեխաներին և, ցույց տալով դպրոցի բակում կատարվող աշխույժը, կարծես ասում էին որ մի քանի տարի հետո նրանք էլ կապրեն պիոներական աշխույժ ու հետաքրքիր կյանքով։*

*Սպորտ մրցումներում առավել աչքի են ընկնում 6-րդ «ա» և 7-րդ «ա» դասարանների պիոներները։ Հինգերորդ դասարանցիներ Ս. Պետրոսյանն ու Ռ. Կարապետյանը առաջնություն են շահում թռիչք-բարձրությունից։*

*Իրենց արագաշարժությամբ ու ճարպկությամբ հիացմունք են պատճառում Ա. Բաբայանը և Մ. Օհանյանը։*

*Վեցերորդ և յոթերորդ դասարանցիների միջև սկսվում են վոլեյբոլի և բասկետբոլի մրցումները։ Դպրոցի շենքը նույնպես լիքն է մարդկանցով։*

*Երկրորդ հարկի դասասենյակներից մեկում պատերին փակցված ու սեղաններին խնամքով շարված են ձեռագործ աշխատանքներ, քանդակներ, մոդելներ, կոլեկցիաներ։ Գեղեցիկ տառերով գրված է. «Աշխատանքը մեր երկրում փառքի, պատվի ու արիության գործ է»։*

*Ցուցահանդեսը մեծ տպավորություն է թողնում այցելուների վրա. դիտողությունների տետրում ծնողներից մեկը գրում է.*

*«...Այստեղ՝ ցուցահանդեսում, յուրաքանչյուր ձեռագործ ցույց է տալիս մանկան անարատ հոգու պարզությունը, ստեղծագործ մտքի ու հմուտ ձեռքի աշխատանքը, աշխատանք, որը կոփում է ու ազնվացնում մարդուն, առավել ևս մատաղ սերնդին... Շատ լավ է, հիանալի...»։*

*Դիլիջանից, Թալինից, Այգեվանից հյուր եկած ավագ ջոկատավարներ՝ Ջ. Գեղամյանը, Մ. Հարությունյանը, Լ. Հովհաննիսյանը, Կ. Վարդանյանը դիտողությունների տետրում գրում են հետևյալը.*

*«...Առանձնապես հետաքրքիր են կարած փոքրիկ զգեստները... Մենք հպարտանում ենք, որ այդպիսի շնորհալի երեխաներ կան։ Մենք անպայման այս հրաշալի փորձը կտեղափոխենք մեր դրուժինաներում ու ջոկատներում»։*



Պիոներները ֆիզիկայի կաբինետում

*Դուրս գալով ցուցահանդեսից՝ այցելուները միջանցքում հանդիպում են բազմաթիվ պատի թերթերի։*

*Հյուրերից մեկը՝ ավագ ջոկատավար Գալստյանը կլանված դիտում է հայ գրողներին նվիրված ֆոտո-թերթը, կարդում է յուրաքանչյուր գրողից բերված քաղվածքներն ու ասույթները։ Դասասենյակներից մեկում շախմատ և շաշկի են խաղում ավելի քան հիսուն աշակերտ։ Մրցումը ղեկավարում է կոմերիտական Վ. Պողոսյանը։ Լարված պայքար է գնում Է. Կոստանյանի և Դ. Գրիգորյանի միջև։*

ժամի չորսն է, ընդմիջումից հետո սկսվել է փեստիվալի երկրորդ բաժինը։ Բոլորը եռուզեռի մեջ են։

Աշնանային արեգակի շողերով ողողված մի դասասենյակում հավաքվել են մի խումբ պիոներներ՝ հանդիպում ունենալու մանկական գրող Մ. Կորյունի հետ։

Հարևան դասասենյակում պիոներները հանդիպում են ունենում Ավտոդողերի գործարանի արտադրության առաջավոր Անաստասիա Գլազովայի հետ։

— Մեր ավտոդողերը հասնում են մինչև Խաբարովսկ, Վլադիվոստոկ, խամ ու խոպան հողեր, Չինաստան, Ալբանիա...— առանձին հպարտությամբ ասում է Ա. Գլազովան։

Պիոներ Լուսիկը թարմ ծաղկեփունջ է մեկնում Գլազովային։ Բոլորը ծափահարում են և սկսում երգել ռուսական ժողովրդական մի երգ։ Երգում է նաև պիոներների հյուրը։ Կողքի սենյակում հանդես են գալիս ինքնագործ խմբակները, անհատ կատարողներ։ Հաջող ելույթ են ունենում երրորդ և չորրորդ դասարանների աշակերտներ Գ. Մեծբուրյանը, Ա. Գազազյանը, Ռ. Մաթևոսյանը և ուրիշները։ Երրորդ հարկում էկրանի վրա ցուցադրվում է գիտական հանրամատչելի կինոնկար։ Մի այլ սենյակում ներկա գտնվողներին հիացնում են պատանի քիմիկոսները։ Առանց լուցկու նրանք ստանում են բենգալյան կրակ, Փարավոնի օձ, ծուխ՝ առանց այրման, անգույն լուծույթներից գունավոր լուծույթներ և այլն։

Արդեն երեկո է։ Դրուժինան նորից շարված է բակում, որի կենտրոնում բրգաձև դարսված են չոր փայտի կտորները։

Խարո՜ւյկ...

Հրացոլքը լուսավորում է աշակերտների դեմքերը։

Դպրոցի ավագ ջոկատավար Նոյեմ Խաչիկյանը համառոտակի պատմում է փեստիվալի արդյունքի մասին։

Աշակերտներին է ողջունում Հայկական ՍՍՌ Գերագույն Սովետի նախագահ, վաստակավոր ուսուցիչ Սիմակ Սահակյանը։

— Երանի ձեզ, սիրելի երեխաներ, երանի ձեզ, որ ապրում ու սովորում եք սովետական երկրում։

Դեպի երկինք հասնող կրակի լեզուները ցերեկվա նման լուսավորել են շրջապատը։

«Մեզ երգն է օգնում ապրել և աշխատել» թեմայով պիոներական փեստիվալը, որ մեծ խնամքով նախապատրաստել էր Գրիշա Հակոբյանի անվան պիոներական դրուժինան, ավարտվում է։

# ՄԻ ԱՄԻՍ ՉԵԽՈՍԼՈՎԱԿԻԱՅՈՒՄ

1955 թվականի ամռանը Սովետական Միության տարբեր քաղաքներից մի խումբ պիոներներ մի ամիս հանգստացան Լեհաստանի, Բուլղարիայի և Չեխոսլովակիայի միջազգային պիոներական ճամբարներում: Նրանք եղան այդ երկրների շատ քաղաքներում, կատարեցին հետաքրքիր էքսկուրսիաներ ու արշավներ:

Տպագրում ենք Երևանի 58-րդ դպրոցի ութերորդ դասարանի աշակերտ Պետրոս Շատախյանի պատմածը:

Մենք պիոներական ճամբար մեկնեցինք օդանավով։ Մոսկվայից Պրագա հասանք ութ ժամում։ Ճանապարհին մտածում էինք, թե ինչպես պետք է խոսենք չեխերի հետ, երբ չգիտենք նրանց լեզուն։

Երբ օդանավը վայրէջք կատարեց, մեզ շրջապատեցին չեխ պիոներները։ Հանդիպումը շատ ջերմ էր. կարծես թե հին բարեկամներ լինեինք։ Պարզվեց, որ մեր անհանգստանալն ավելորդ էր։ Չեխոսլովակիայի դպրոցներում չորրորդ դասարանից սկսած աշակերտները սովորում են ռուսաց լեզու։ Եվ մենք նրանց հետ խոսում էինք ռուսերեն։

Ճամբարային եռուզեռն սկսվեց առաջին իսկ օրից։

Մեզ համար անմոռանալի է այն օրը, երբ գնացինք Գրադչաննի՝ Պրագայի Կրեմլը, որը նման է Մոսկվայի Կրեմլին։ Այնտեղ պատմական հուշարձաններ շատ կան։ Մեզ հատկապես դուր եկավ Կրեմլի իսպանական դահլիճը։ Մի ժամանակ Պրագա է եկել իսպանական թագավորը։ Նա այնքան է հավանել այդ դահլիճը, որ պարգևատրել է իսպանական շքանշանով։ Դրա համար էլ այն կոչվում է իսպանական դահլիճ։ Գրադչաննիում է գտնվում այն տունը, որտեղ ապրում է Չեխոսլովակիայի պրեզիդենտ Անտոնին Զապոտոցկին։

Գեղեցիկ է քաղաքի բանվորական շրջանը։ Այնտեղ գրանիտե պատվանդանի վրա կանգնած է սովետական № 23 տանկը։ Դա այն տանկն է, որն առաջինը եկավ չեխերին օգնության՝ հիտլերականների դեմ բարձրացրած ապստամբության ժամանակ։

Հետաքրքիր է հատկապես հին Պրագան։ Նրա փողոցները շատ նեղ են. իսկ երբ կանգնում ես Նվիչկա բարձունքի վրա, դժվարությամբ ես հայացքդ հեռացնում չքնաղ քաղաքից։ Այնտեղ տեսարժան վայրեր շատ կան։ Այդ բարձունքի վրա կա մի տնակ, որի պատերը ներսից ծածկված են հայելիներով։ Երբ մի մարդ է ներս մտնում, թվում է, թե դահլիճը լցվեց մարդկանց բազմությամբ։

Չեխոսլովակիայի մայրաքաղաքում մեծ շինարարություն է գնում։ Քաղաքի բոլոր շրջաններում մենք տեսնում էինք, թե ինչպես մարդիկ կառուցում են բնակելի շենքեր, դպրոցներ, գրադարաններ ու հիվանդանոցներ։

Չեխ պիոներները հպարտությամբ մեզ ծանոթացրին «Զլատա Ուլիչկային», որը երեխաների ամենասիրելի վայրն է։ Դա մի փոքրիկ փողոց է. երկարությունը հազիվ հարյուր քայլ լինի։ Տնակներն այնքան փոքր են, որ մենք կուզեկուզ էինք մտնում։ Երբ ներս մտանք, մեզ թվաց թե սենյակում իսկական մարդիկ կան։ Զինվորական համազգեստով մի մարդ հրացանն էր մաքրում, մեկ ուրիշը՝ ջուր խմում, երրորդը՝ տարեգրություն կարդում։ Դա չեխ արվեստագետների ու քանդակագործների աշխատանքն էր, որ բոլորիս հիացրել էր։ Մենք այցելեցինք նաև Դեմենովյան քարանձավը։ Այստեղ կան ստորերկրյա շատ դահլիճներ, որոնք միմյանց հետ միացած են նեղ անցուղիներով։ Դահլիճներում կան լճեր, որոնց ջուրը կանաչավուն է և սառը։ Այդ քարանձավը հայտնաբերել է գյուղական մի ուսուցիչ։

Մեր ճամբարում հանգստանում էին չեխ, բուլղարացի և սովետական երեխաներ։ Մենք կազմակերպում էինք մեր երկրներին ու ժողովուրդներին նվիրված օրեր։

Առաջին օրը նախաճաշից հետո չեխ երեխաները պատմեցին իրենց Հայրենիքի մասին։ Մենք շատ նորություններ իմացանք Չեխոսլովակիայի մասին։ Այնտեղ արդյունաբերությունն սկսել է զարգանալ դեռ 150 տարի առաջ։ Բայց ազատագրված չեխ ժողովուրդը տասը տարվա ընթացքում ավելի շատ բան է արել իր երկրի համար, քան կապիտալիստները անցած 150 տարվա ընթացքում։ Մեզ պատմեցին նաև Օրավյան ջրամբարի մասին, որի կառուցումը սկսվել էր քառասուն տարի առաջ և չէր ավարտվել։ Միայն 1945 թվականից հետո, երբ չեխ ժողովուրդը դարձավ իր երկրի տերը, վերսկսվեցին ջրամբարի կառուցման աշխատանքները։ Այժմ էլեկտրակայանը շահագործման է հանձնված, և ստեղծվել է Օրավյան ծովը։

Այդ օրը խոհարարները պատրաստել էին չեխական ազգային ճաշեր։ Հետճաշյա հանգստից հետո կազմակերպվեցին զանազան խաղեր։ Բոլորս միասին կատարում էինք չեխական և սլովակյան երգեր ու պարեր։

Հաջորդ օրը հենց առավոտվանից հնչում էր ռուսական երաժշտությունը։ Երեկոյան մենք ցու-



Բարեկամության երդում

ցադրեցինք մեր ինքնագործունեությունը։ Իսկ հետևյալ օրը ամեն ինչ ընթացավ բուլղարական ազգային ձևով։ Բուլղարացի պիոներները պատմում էին իրենց երկրի մասին, երգում հայրենի երգեր։

Վերջին օրերին կազմակերպեցինք մի շարք արշավներ։ Նավարկեցինք Դանուբեց գետակով, որը բաժանում է Չեխոսլովակիան Լեհաստանից։ Եղանք «Սվիտ» տեքստիլ ֆաբրիկայում, տեսանք Օրավյան ծովը։ Դանուբ գետի վրա նավարկելիս մենք հանդիպեցինք սովետական նավի։ Մեր ուրախությանը սահման չկար։ Կապիտանը ողջույնի ազդանշան տվեց, իսկ մենք «ուռա» էինք գոչում։

Արագ անցավ ճամբարային ամիսը։ Ես երբեք չեմ մոռանա իմ չեխ բարեկամներին։

# ԿԱՇՎԵ ՁԵՌՆՈՑՆԵՐԻ ՎԱՐՊԵՏԸ

Ս. ԱՎԵՏԻՍՅԱՆ

*— Մեկ, երկու, երեք, չորս...*

*Երիտասարդ բռնցքամարտիկը դժվարությամբ բարձրացավ ռինգի հատակից։ Նա օրորվում էր, չէր կարողանում պահպանել հավասարակշռությունը՝ ծնոտին ստացած ծանր հարվածից։ Նա հազիվ կարողացավ մինչև վերջ շարունակել մարտը. ուժերը սպառվում էին, շնչառությունը չէր բավականացնում, ձեռքերը առաջ չէին գնում։ Դատավորները հաղթանակը շնորհեցին նրա «հակառակորդին»։*



*Դա Կարլոս Ջաներյանի առաջին պարտությունն էր։ Մարտից հետո, տեսնելով իր աշակերտի դեմքի հուսահատ արտահայտությունը, մարզիչ Վազգեն Հովհաննիսյանը մտերմաբար ասաց.*

*— Հուսահատվելու ոչինչ չկա, Կարլո՛ս, լավ բռնցքամարտիկ դառնալու համար հարկավոր է ճաշակել նաև պարտության դառնությունը, իսկ հաղթելու համար պետք է մարզվել, մարզվել համառորեն։*

*Կարլոսը դահլիճում նստած դիտում էր մյուս բռնցքամարտիկների հանդիպումները։ «Ինձնից բռնցքամարտիկ դուրս չի գա,— մտածում էր նա,— ես երբեք նրանց չեմ հասնի, ինչ արագաշարժ են, ինչպես ճարպկորեն են խուսափում հարվածներից։ Իսկ ինչպե՞ս են նրանք հասել այդ արդյունքին,— ինքն իրեն հարց տվեց Կարլոսը և կարծես իր ականջի տակ լսեց իր մարզիչի խոսքերը. «Հաղթելու համար պետք է մարզվել, մարզվել համառորեն»։*

*Եվ Կարլոսը որոշեց լրջորեն մարզվել։ Նա համառորեն մարզվում էր։ Շուտով ռեսպուբլիկայի բռնցքամարտության առաջնության մրցումներում, Կարլոսը հաղթում է բոլոր «հակառակորդներին» և արժանանում ռեսպուբլիկայի չեմպիոնի կոչմանը։ Առաջին հաջողությունը ոգևորում է նրան։ Նա սկսում է ավելի ջանասիրությամբ պարապել։ 1954 թվականը նշանավոր տարեթիվ է դառնում նրա սպորտային կյանքում։ Սովետական Միության առաջնության մրցումներում երիտասարդ բռնցքամարտիկը փայլուն հաղթանակներ է տանում բազմակի չեմպիոններ Տիշինի և Տոլստիկովի դեմ։ Անդրկովկասյան սպարտակիադայում սպորտի վարպետ Գիվի Դարբախսելու դեմ հաղթանակ նվաճելով, Կարլոսը ստանում է Սովետական Միության սպորտի վարպետի կոչում։ Ձեռք բերած հաջողությունները չեն հանգստացնում Կարլոսին։ Նա ավելի ուժգնորեն է պարապում իր սպորտային վարպետությունը բարձրացնելու ուղղությամբ։ Չէ՞ որ առջևում սպասվում են ավելի պատասխանատու հանդիպումներ...*

*1955 թվական, Արևմտյան Բեռլին։ Եվրոպայի չեմպիոնի կոչումը նվաճելու համար այստեղ են հավաքվել հարյուրավոր ուժեղագույն բռնցքամարտիկներ, բազմաթիվ միջազգային մրցությունների հաղթողներ։ Նրանց մեջ է նաև Երևանի ֆիզկուլտուրայի ինստիտուտի ուսանող Կարլոս Ջաներյանը։ Նա պաշտպանելու է Սովետական Միության սպորտային պատիվը՝ առաջին միջին քաշում։ Այդ Կարլոսի առաջին միջազգային հանդիպումն էր։ «Կկարողանա՞մ արդյոք պատվով դուրս գալ հանդիպումից», շարունակ մտածում էր նա։*

*Ահա և մրցումների առաջին օրը՝ մայիսի 25-ը։ «Շպորտպալլասը», որտեղ անց էին կացվում մրցումները, լիքն էր հազարավոր հանդիսատեսներով։ Երբ Կարլոսը ռինգ մտավ, տեսավ իր վրա ուղղված հազարավոր աչքեր։ Ոմանք նայում էին նրան բարեկամական, ոմանք էլ թշնամական հայացքով...*

*Կարլոսը հաստատուն քայլերով շարժվեց դեպի ռինգի կենտրոն՝ Բայկուսին ընդառաջ։ Ահա և առաջին հարվածը, որ Կարլոսն ստացավ իր դեմքին։ Այդ կարծես թե հիշեցրեց իր անելիքի մասին։ Առաջին ռաունդում ասես ոչինչ չէր ստացվում։ Կարլոսը մեկ-երկու անգամ փորձեց կասեցնել «հակառակորդի» գրոհները, բայց ապարդյուն։ Բայկուսը շարունակում էր միավորները հավաքել։ Առաջին ռաունդը վերջացած է։*

*— Ոչինչ չի ստացվում,— անկյունում կանգնած ավագ մարզիչ Էդուարդ Արիստակեսյանին մոտենալով ասաց Կարլոսը։*

*— Կստացվի։ Չպետք է հուզվել և սառնասրր-*

տորեն կարողանալ վարել մարտը։ Ինքդ ստիպիր նրան ընդունելու մարտ վարելու քո տակտիկան և անցիր հարձակման։

Գոնգի հարվածից հետո Կարլոսն անցավ հարձակման։ «Պետք է հաղթել, ինչ էլ որ լինի», մտածում էր նա։ Խուսափելով իր «հակառակորդի» հարվածներից, այժմ Կարլոսն էր հարվածում նրան։ Ուժեղ հարվածների մի շարք և Բայկուսը փռվեց ռինգի հատակին։ Նա հազիվ ուշքի եկավ։ Հետո Թյուրքիայի չեմպիոնն սկսեց անօգնական գլորվել ռինգի մի անկյունից մյուսը։ Ավարտված է երրորդ ռաունդը։

— Հաղթանակը շնորհվում է Կարլոս Ջանեբյանին,— լսվեց ռադիոբարձրախոսից։

Կարլոսը հուզմունքից ցնծաց։ Ոչ պակաս համառ և սպորտային լարված պայքարի պայմաններում անցան նրա մյուս հանդիպումները իտալական ուժեղագույն բռնցքամարտիկ Ցիցիանիի և Գերմանական Դեմոկրատական ռեսպուբլիկայի չեմպիոն Կարոլլի հետ։ Դրանք էլ ավարտվեցին Կարլոսի հաղթանակով։ Եզրափակիչ խաղում Կարլոսի «հակառակորդն» էր Լեհաստանի չեմպիոն Պետշիկովսկին։ Նա վարել էր ավելի քան հարյուր երեսուն մարտ՝ երկու անգամ ավելի, քան Կարլոսը։ Միայն մեծ փորձն օգնեց Պետշիկովսկուն միավորների աննշան առավելությամբ մարտը շահելու։

Մրցումներն ավարտված են։ Սովետական երիտասարդ բռնցքամարտիկ սպորտի վարպետ Կարլոս Ջանեբյանը Եվրոպայի առաջնության մրցումներում երկրորդ տեղը գրավելու համար պարգևատրվում է արծաթե մեդալով։

Ջանեբյանը հոկտեմբեր ամսին Սովետական Միության բռնցքամարտիկների հավաքական թիմի կազմում մեկնում է Լոնդոն, Անգլիայի հավաքական թիմի բռնցքամարտիկների հետ հանդիպելու։ Թե՛ Լոնդոնում և թե Գլազգոյում կայացած հանդիպումների ժամանակ Ջանեբյանը նորից բարձր է պահում սովետական սպորտի պատիվը։ Նա փայլուն հաղթանակներ է տանում անգլիական ուժեղագույն բռնցքամարտիկների դեմ։

Հանդիպումներն ավարտված են։ Ջանեբյանը նորից հարազատ Երևանում է։

## ՔՈ ԱՎԱԳ ԸՆԿԵՐԸ

Վարդան Օհանյանը մանուկ հասակում պատրաստում էր զանազան ինքնաշեն գործիքներ, տրամվայի և ավտոմեքենայի մոդելներ։ Նա շատ էր սիրում ֆիզիկան և դա օգնեց նրան ինքնուրույն կերպով պատրաստելու ռադիո-ընդունիչ։

Ամեն օր դասերից հետո նա զբաղվում էր սարքեր պատրաստելով։

Վարդանը յոթերորդ դասարանում պատրաստեց փոքրիկ կինոապարատ և սկսեց իր ընկերների համար ցուցադրել կինոնկարներ։

Նա շատ ընդունակ և աշխատասեր երեխա էր։

Ինքնաշեն լավագույն գործիքներով նա մասնակցել է ռեսպուբլիկական ցուցահանդեսին և գրավել առաջնակարգ տեղեր։

Իններորդ դասարանն ավարտելուց հետո Վարդանը տեղափոխվեց բաներիտ դպրոց։ Նա միաժամանակ աշխատում էր Ալավերդու պղնձաձուլական կոմբինատի մեխանիկական ցեխում որպես խառատի օգնական։ Շուտով նրան հաստոց վստահեցին։ Կարճ ժամանակից հետո նա դարձավ ցեխի վարպետ։

Ալավերդու Սպանդարյանի անվան դպրոցի նախկին աշակերտն այժմ քիմիական գործարանի գլխավոր մեխանիկն է։ Վ. Օհանյանը միաժամանակ հեռակա կարգով սովորում է Մոսկվայի պոլիտեխնիկական ինստիտուտի ավտո-մեխանիկական ֆակուլտետի չորրորդ կուրսում։

Նա տասնմեկ նորարարական առաջարկություններ է արել, որոնց կիրառման շնորհիվ գործարանը տարեկան ստանում է 131 հազար ռուբլու օգուտ։

Օհանյանը ռադիո-ընդունիչի վրա պատրաստել է մի հարմարանք, որը հնարավորություն է տալիս միանգամից տասը սկավառակ դնել ընդունիչի վրա և ավտոմատ կերպով փոփոխելով նվագել բոլորը։ Նա ունի սեփական «Մոսկվիչ» ավտոմեքենա, որը կարողանում է ինքնուրույն վարել, քանդել և հավաքել։

Վ. Օհանյանը երբեք չի մոռանում հարազատ դպրոցը, ուսուցիչներին։ Նա հաճախ է լինում դպրոցում և օգնում է պատանի տեխնիկներին, խորհուրդներ տալիս, թե ինչպես պատրաստեն ինքնաշեն գործիքները։

— Միջնակարգ դպրոցն ավարտելուց հետո եկեք մեզ մոտ աշխատանքի,— այսպիսի խոսքերով է նա դիմում բարձր դասարանների աշակերտներին։

Խ. ՀԱՐՈՒԹՅՈՒՆՅԱՆ, Ս. ՀԱԿՈԲՅԱՆ

ք. Ալավերդի

# ԼԵՆԻՆԳՐԱԴԻ ՄԵՏՐՈՊՈԼԻՏԵՆԸ

*Ա. ԱՎԱԳՅԱՆ*

*Լուսանկար՝ Վ. ԿԱՊՈՒՍՏԻՆԻ (ՏԱՍՍ)*

Վաթսունհինգ տարի առաջ Պետերբուրգի անվանի ինժեներները մտածեցին քաղաքում մետրոպոլիտեն հիմնել: Այդ ցանկությունը կատարվեց: Լենինգրադի մետրոպոլիտենը կառուցվեց սովետական մարդկանց ձեռքով:

Ստորերկրյա էլեկտրական գնացքի առաջին ներքն իր սկիզբն առնելով «Ապստամբության հրապարակից», տասնըմեկ կիլոմետր երկարությամբ անցնում է քաղաքի խիտ բնակեցված վայրերով և քաղաքի կենտրոնը միացնում հին արդյունաբերական շրջանի՝ Նարվսկի Զաստավայի հետ:

Մեր ճարտարապետները, վարպետները ու բանվորները ոչինչ չեն խնայել, որ մետրոն գեղեցիկ ու բարեկարգ լինի: Կառուցողները օգտագործել են մոսկվացիների հարուստ փորձը:

Ինչքա՜ն շատ աշխատանք է կատարվել: Միայն ստորերկրյա մայրուղու կառուցման համար հանվել է մեկ և կես միլիոն խորանարդ մետր ապառ, լցվել է մոտ 450 հազար քառակուսի մետր բետոն և երկաթբետոն: Օգտագործվել է քսան հազար տոննա երկաթ:

Կառուցվել են ութ կայարան, յոթ թունել՝ ինքնաշարժ սանդուղքներով, տասնհինգ օդափոխիչ հանգույց, էլեկտրոդեպո, արհեստանոցներ և այլն:



*«Ապստամբության Հրապարակ» կայարանը*

Գնում ենք կայարաններով, մեկ առ մեկ դիտում, հիանում: Ահա «Ապստամբության հրապարակը»: Նրա մի խորաքանդակը պատկերում է Հոկտեմբերյան Մեծ ռևոլյուցիայի օրերին պրոլետարիատի գրոհը Ձմեռային պալատի վրա:

Ահա հաջորդ՝ «Վլադիմիրյան» կայարանը: Մոզաիկայից շինած «Առատություն» հսկա պաննոն նվիրված է սովետական ժողովրդի երջանիկ կյանքին: «Պուշկինյան» կայարանում առանձին շուք են տալիս երկշարք բարձրադիր բրոնզյա սյուները: Հզոր հայելիավոր լամպերն իրենց լույսն են սփռում կայարանի վերջին պատի մոտ բարձրացող Պուշկինի մարմարյա արձանի վրա:

Մտնում ենք «Տեխնոլոգիական ինստիտուտ» կայարանը: Կամարների և ստորերկրյա դահլիճների պատերին դրոշմած ռուս գիտնականների՝ Մենդելեևի, Պոպովի, Լոմոնոսովի, Յաբլոչկովի, Մեչնիկովի, Սեչենովի, Ժուկովսկու և ուրիշների նկարներն ու մեդալիոնները պատմում են մեր մեծ Հայրենիքի գիտության զարգացման մասին:

Ահա «Բալթիական» կայարանը: Կապտամոխրագույն, ալիքաձև մարմարապատ, քամուց առագաստի ձև ստացած այս կայարանը մեզ պատմում է այն հերոս ծովայինների մասին, որոնք իրենց ռազմանավերով թշնամիներից պաշտպանեցին ծովափնյա քաղաքը:

Շտապում ենք մտնել «Գործադուլավորների հրապարակը»: էլեկտրագնացքը Գորկու անվան Կուլտուրայի պալատի մոտով մեզ բոցնում է «Կիրովյան գործարան» կայարանը: Զորս շքանշան ստացած գործարանի հաջողությունների հետ միասին, այս կայարանի նկարները պատմում են երկրի արդյունաբերության ծաղկման մասին:

«Ավտովոն» մետրոպոլիտենի վերջին կայարանն է: Հայրենական Մեծ պատերազմի ժամանակ Լենինգրադի հերոսական պաշտպանության առաջին գիծն է եղել այս վայրը: Փայլուն սյունաշարերը երիզող ոսկեգույն հսկա ժապավենը մի առանձին տոնական տեսք է տալիս կայարանին: Գունավոր քարերից շինած վերջնապատը պատկերում է հերոս քաղաքի «Հաղթանակի շքանշա՜նը»:

Մետրոպոլիտենի կայարանների և նախասրահների հարդարման համար օգտագործվել է մարմար, գույնզգույն քարեր և այլ շինանյութեր: «Ավտովո» կայարանի սյուները երեսապատված են գեղարվեստական ապակիով, որն ավելի ամուր ու գեղեցիկ է, քան մարմարը: Գրանիտյա հատակների ձևավորման համար այստեղ օգտագործվել է հալած քար: Ավելի քան 1.200 ջահ ու աշտանակ լուսավորում են մետրոպոլիտենի կայարաններն ու նախասրահները՝ չհաշված երեսուն հազար էլեկտրոլամպերը, որոնք լուսավորում են ստորերկրյա երկաթուղու ճանապարհները:

Մետրոպոլիտենի գնացքը սլանում է արագ, որովհետև ավելի լայն են նրա երկաթգծերը: Նոյեմբերի 15-ին սկսվեց մետրոպոլիտենի աշխատանքը:

Լենինգրադի մետրոպոլիտենին տրված է Վ. Ի. Լենինի անունը:

# ՄՈՑԱՐՏ

## (Ծննդյան երկու հարյուր տարին)

1762 թվականին Վիեննայի, Փարիզի, Լոնդոնի համերգային դահլիճներում հանդես էր գալիս մի համեստ գավառական երաժիշտ: Նա իր երկու երեխաների՝ տասը տարեկան աղջկա և վեց տարեկան տղայի ձեռքերից բռնած հայտարարում էր, որ Մարիան և Վոլֆգանգը դաշնամուրի վրա միասին կկատարեն մի շարք երաժշտական պիեսներ: Այնուհետև Վոլֆգանգը առաջարկված թեմայով հանպատրաստից մի բան կնվագի: Երբ հասարակայնությունը ցանկանա, Վոլֆգանգը կարող է նվագել նաև շորով ծածկված ստեղնաշարի վրա:



Եվ երբ տղան փայլուն կերպով կատարում էր բոլոր դժվարին առաջադրանքները, հասարակայնությունն արտակարգ հիացմունք էր ապրում:

Այդ «հրաշք» երեխան ապագա գերմանացի հանճարեղ կոմպոզիտոր Վոլֆգանգ Ամադեյ Մոցարտն էր:

Մոցարտն ապրեց ընդամենը երեսունհինգ տարի, բայց այնքա՜ն շատ ստեղծագործեց:

Մոցարտը դեռևս վեց տարեկան հասակից սկսեց համերգային շրջագայություններ կատարել Եվրոպայի շատ քաղաքներում: Նա հիանալի դաշնակահար էր, ջութակահար և երգեհոնահար: Բայց նա միաժամանակ համառորեն սովորում էր ու ստեղծագործում:

Տասնվեց տարեկան հասակում Մոցարտն արդեն երեք հարյուրից ավելի ստեղծագործությունների հեղինակ էր, այդ թվում յոթ աչքի ընկնող օպերաների: 1770—1780 թվականներին Մոցարտը վերջնականապես ձևավորվում է որպես ստեղծագործող: Նա խիզախորեն օգտագործում է այն նորը, առաջավորը, լավագույնը, որ կար եվրոպական երաժշտության մեջ: Նա լինում է իտալական քաղաքներում, ապա Փարիզում, Վիեննայում...

Կյանքի վերջին տասնամյակում Մոցարտը գրում է իր ամենանշանավոր համաշխարհային հռչակ ստացած ստեղծագործությունները: Չկա մի երաժշտական ժանր, որը Մոցարտը օգտագործած չլինի:

Նա գրել է բազմաթիվ երգեր, դաշնամուրային սոնատներ, տրիոներ, կվարտետներ, բազմաթիվ կոնցերտներ՝ ջութակի, դաշնամուրի, ֆլեյտայի և այլ գործիքների համար, սիմֆոնիկ նվագախմբի նվագակցությամբ: Հետաքրքիր է, որ ջութակի և սիմֆոնիկ նվագախմբի համար գրած յոթ կոնցերտներից վեցը նա գրել է 1775 թվականին: Դրանք հենց ինքն էր կատարում համերգներում: Մոցարտը գրել է մոտ հիսուն սիմֆոնիա:

Բայց բոլոր ժանրերից ամենից ավելի Մոցարտը սիրել է օպերան: Ահա թե ինչ է գրում նա իր նամակներից մեկում. «Իմ մեջ աննկարագրելի ցանկություն կա օպերա գրելու: Նախանձում եմ բոլոր նրանց, ովքեր օպերա են գրում: Ես պատրաստ եմ լաց լինել, երբ օպերային արիա եմ լսում: Առաջին տեղը ինձ համար օպերան է»:

Օպերա գրելու նրա իղձն իրականացավ: Ստեղծվեցին նրա քսաներեք օպերաները, որոնցից նշանավորներն են՝ «Ֆիգարոյի ամուսնությունը», «Դոն-Ժուանը», «Կախարդական սրինգը» և այլն:

Մահվանից մի քանի ամիս առաջ, հիվանդ վիճակում նա ստեղծեց իր երկու ուժեղ կլասիկ երկերը՝ «Կախարդական սրինգ» օպերան և «Ռեկվիեմը»:

Որքան բեղմնավոր էր հանճարեղ Մոցարտի ստեղծագործական կյանքը, այնքան ծանր էր նրա անցած ուղին: Տարիներ շարունակ Մոցարտը ոչ մի տեղ ծառայության մշտական տեղ չէր գտնում: Ծանր էր հատկապես նրա կյանքը Զալցբուրգի կապելլայում աշխատած ժամանակ: Մոցարտը կախման մեջ էր տիրոջից և իրավունք ուներ գրել միայն նրա պատվերով: Հետո նա տեղափոխվեց Վիեննա: Այստեղ էլ հաճախ նա ստիպված էր լինում բախվել ազնվականների ու նույնիսկ թագավորի հետ: Բայց այլևս ոչինչ չէր կարող ընկճել ստեղծագործական ուղին հարթած կոմպոզիտորին՝ որն այնպես անհունորեն սիրում էր արվեստը և իր ամբողջ կյանքով նվիրվել էր նրան:

Մոցարտը մեռավ 1791 թվականի դեկտեմբերի չորսին: Նրան շատ բարձր են գնահատել ռուս մեծ կոմպոզիտորները:

Մոցարտի ստեղծագործությունները հուզում են բոլոր ժողովուրդների սրտերը:

*Ց. ԲՐՈՒՏՅԱՆ*
*(Արվեստագիտության թեկնածու)*

## ՏՐԱՄՎԱՅՈՒՄ

*Գ. ԽԱՉԱՏՐՅԱՆ*

Տես Սաքոյին՝ գնդակի հետ
Ոնց է բազմել տրամվայում,
Էլ չի ասում հենց իր կողքին
Մի պապիկ է կանգնած նայում:
Տես հենվել է ձեռնափայտին,
Դողդողում է ոտքի վրա,
Զյունից ներմակ խիտ մորուքը
Զարդարել է կուրծքը նրա:
Բայց չի շարժվում Սաքոն տեղից,
Չի էլ նայում ծեր պապիկին,
Պեռ պնդում է նա իր տեղը,
Ու զգում է ոտքը-ոտքին:
Զարմանում են նստած մարդիկ
Ու դիմում են մեր Սաքոյին.
— Քա դպրոցում քեզ չե՞ն ասել՝
Պիտի հարգել միշտ մեծերին:
— Ասել են, դե, ինչ անենք որ,—
Գոռգոռում է Սաքոն տեղից,—
Հիմա էլ հո դպրոց չկա,
Արձակուրդ է երեկվանից:

## ՎԱՃԱՌՆ ՈՒ ՏԵԳԸ

*Հ. ՍԵՎԱՆ*

Հին ժամանակ հեռու երկրում
Մի խորամանկ մարդ էր ապրում,
Ծախում էր նա վահան ու տեգ,
Չէր դժգոհում բախտից երբեք:

Հենց որ մեկը մոտ էր գալիս,
Ճարտար լեզվին զոռ էր տալիս,
— Չես գտնի դու էսպես վահան,
Աշխարհում քեզ՝ լավ պահապան:

Իսկ թե մեկը տեգ էր ուզում,
Հուր էր թափում կրակ լեզուն.
— Ոչ մի վահան՝ հազած բազկին...
Չի՛ դիմանա էս սուր տեգին:

Այստեղ մի մարդ ասաց նրան.
— Հերիք գովես զենքերդ այդքան,
Մի քո տեգով զարկ վահանիդ
Տեսնենք որն է դրանցից պինդ...

# Բուժիչ ճառագայթներ

*Ս. ՀՈՎՀԱՆՆԻՍՅԱՆ*
*(Բիոլոգիական գիտությունների թեկնածու)*

*Լուսանկար՝ Ն. ԽՈՐՈՒՆԺԻԻ*
*(«Սովետսկի Սոյուզ» ամսագրից)*

Լաբորատորիայում աշխատանքն արդեն վերջացել էր: Շտապելով տուն, ֆիզիկոս Բեկկերելը որոշեց փորձն այլևս չշարունակել: Նա լուսանկարչական ապակիները փաթաթեց սև թղթի մեջ, ուրան մետաղի աղի հետ միասին, տեղավորեց պահարանում: Մի քանի օր հետո նա ուզեց ստուգել, թե չեն փչացել ապակիները: Լուսանկարչական ապակիների վրա նկատվում էին ինչ-որ հետքեր: Բեկկերելը գտավ, որ ուրանը բաց էր թողել անտեսանելի ճառագայթներ, որոնք նկարվել էին ֆոտոապակու վրա:

Այս փորձերի մասին լսելուց հետո շատ գիտնականներ սկսեցին ճառագայթող նյութեր որոնել: Մեծ աշխատանք կատարեցին հատկապես լեհ գիտնական Մարիա Սկլադովսկայա Կյուրին և նրա ամուսինը՝ Պյեր Կյուրին: Պարզվեց, որ կան և ուրիշ մետաղներ, որոնք նույնպես ճառագայթվում են: Այդպիսի նյութերը հետագայում անվանեցին բնական ռադիոակտիվ, այսինքն՝ ճառագայթվող նյութեր:

### ՈՐՏԵ՞Ղ ԵՆ ԾՆՎՈՒՄ ՃԱՌԱԳԱՅԹՆԵՐԸ

Ինչպե՞ս են առաջանում ճառագայթները. գիտությունն այդ իմացավ այն ժամանակ, երբ հայտնաբերվեց ատոմի՝ նյութի ամենափոքրիկ մասնիկի կառուցվածքը և նրա կորիզի քայքայման երևույթը: Ատոմային էներգիայի հայտնագործումը լրիվ բացեց այդ գաղտնիքը:

Ատոմի կորիզը քայքայելուց գիտնականները հսկայական էներգիա ստացան: Նրանք նկատեցին, որ ատոմի մասնիկները պոկվելով ցրվում են ճառագայթների ձևով:

Այժմ գտնված են այնպիսի միջոցներ, որոնք կարող են քայքայել զանազան ճասարակ մետաղների ատոմները: Կարելի է պատրաստել արհեստական ռադիոակտիվ նյութեր: Օրինակ՝ հանքային բնական երկաթը չունի և ոչ մի ճառագայթ, բայց հատուկ հարմարանքների միջոցով այն կարելի է վերածել ճառագայթվող երկաթի:

## ԲԺՇԿԻ ՕԳՆԱԿԱՆՆԵՐԸ

Բժշկի հետ մտնում ենք նրա առանձնասենյակը. այնտեղ ոչ ոք չկա, սեղանի վրա դրված է միայն ճառագայթներ որսացող ապարատը: Նրանից դուրս եկող լարերը գնում են դեպի հարևան սենյակը: Հանկարծ ապարատում սկսում են վառվել և մարել կարմիր լույսերը: Ժամացույցի նման գործիքի սլաքները շարժվում են: Հարևան սենյակում գտնվող հիվանդի կրծքի վրա դրված փոքրիկ ապակե խողովակն անցնում է գործի: Նա զգում է արհեստական ռադիոակտիվ կերակրի աղի ներկայությունը սրտում, որը բժիշկը սրսկել է հիվանդի արյան մեջ և հաղորդում է մեզ: Անցնում է որոշ ժամանակ, ապարատը լուռ է, բայց ահա նորից ամբողջ արյան անոթներով անցնելով ճառագայթվող աղը արյան հետ վերադառնում է սիրտը: Կարմիր լամպերը սկսում են նորից հաղորդել մեզ այդ մասին. իսկ ժամացույցի սլաքները՝ հաշվում են նրանց քանակը:

Արհեստական ռադիոակտիվ նյութերը սրսկելով արյան մեջ, բժիշկը կարող է այժմ որոշել արյան շրջանառության արագությունը, սրտի աշխատանքը: Ճառագայթները որսող ապարատների միացված հատուկ հարմարությունները կարող են հաշվել նրանց քանակը:

Հայտնի է, որ չարորակ ուռուցքները, հիվանդ մարմնի մասերը մեծ չափով ֆոսֆոր են օգտագործում: Շատ դժվար է բուժել հատկապես ուղեղի ուռուցքները, որովհետև մարդու ուղեղը շրացված վիճակում դժվար է իմանալ, թե որտեղ է գտնվում ուռուցքը: Արհեստականորեն պատրաստված ճառագայթվող ֆոսֆորն այստեղ մեծ օգնություն է ցույց տալիս բժշկին: Ռադիոակտիվ ֆոսֆորը ներարկելով արյան մեջ. մի քանի ժամից հետո կարելի է ճիշտ որոշել, թե ուղեղի որ մասումն է նա ամենից շատ կուտակվել: Չէ՞ որ այդ մասից մեծ քանակությամբ ճառագայթներ դուրս կգան: Պատրաստելով ճառագայթվող զանազան նյութեր, դեղեր, կերակրանյութեր, կարելի է նաև որոշել, թե օրգանիզմի ո՞ր մասերը ինչպե՞ս են պատասխանում կամ օգտագործում նրանց: Այսպիսով ճառագայթները մարդու հիվանդությունները կանխորոշելու գործում մեծ օգնություն են ցույց տալիս:

## ՆՐԱՆՔ ԲՈՒԺՈՒՄ ԵՆ ՀԻՎԱՆԴՈՒԹՅՈՒՆՆԵՐԸ

— Միացնել ճառագայթող բռնակը,— լսում ենք բժշկի հրամանը: Այստեղ բուժում են ներքին օրգանների, ուղեղի, ոսկորների քաղցկեղը: Արհեստական ռադիոակտիվ մետաղ կոբալտը շրջապատված է հաստ կապարե շապիկով: Մի փոքրիկ անցքից դուրս են նետվում կոբալտի քայքայումից առաջացած ճառագայթները: Նրանց միայն մի փոքր մասը պետք է ազդի հիվանդի վրա: Կապարե պատերը կլանում են ավելորդ ճառագայթները:

Քաղցկեղ հիվանդությունը բժշկի ամենաուժեղ թշնամիներից մեկն է, երբ չոչնչացվի քաղցկեղով հիվանդ բջիջը, ապա բազմանալով նա կտարածվի մարդու ամբողջ օրգանիզմում: Բայց ինչպես ոչնչացնել հիվանդ բջիջները: Այս հարցը դարեր շարունակ մնացել էր չլուծված: Պայքարի միակ միջոցը վիրաբույժի դանակն էր: Կտրում էին մարդու ոտքը, կամ ամբողջ թևը, երբ նրանց վրա առաջանում էր քաղցկեղ չարորակ ուռուցքը: Գիտությունը դանակը փոխարինեց ճառագայթներով: Կոբալտի ճառագայթները թափանցում են անվնաս մաշկի միջով, հասնում են ոսկորներին,



*Բուժում գամմա-սարքավորմամբ*

ներքին օրգաններին և այնտեղ ոչնչացնում քաղցկեղի ուռուցքը:

Տարիներ շարունակ լեյկեմիան անբուժելի էր: Արյան սպիտակ գնդիկները շատանում են, մարդու մաշկը սպիտակում է, ուժերը՝ ցլատում: Բժիշկները և գիտնականները երբեք չէին մտածի, որ ոսկին բացի զարդ լինելուց կարող է նաև բուժել հիվանդությունները: Արհեստականորեն ստացված ճառագայթվող ոսկին ներարկելով արյան մեջ, մի քանի ամսում կարելի է հաղթել լեյկեմիային:

Այժմ տասնյակ արհեստական ռադիոակտիվ նյութերի՝ ֆոսֆորի, յոդի, մանգանի ճառագայթները օգնում են բժշկին զանազան հիվանդությունների դեմ պայքարելու գործում:

Հեռու չէ այն օրը, երբ կգտնվեն բոլոր հնարավորությունները, որոնք կբարձրացնեն ատոմային ճառագայթների բուժող հատկությունները և կփոքրացնեն նրանց վնասակար ազդեցությունը:

# ԳՐՔԵՐԻ ԱՇԽԱՐՀՈՒՄ

## «ՌՈԲԻՆ ՀՈՒԴ»

Անգլիայի թագավորական անտառապահ Հյու Ֆիցուրի ընտանիքում 1160 թվականին ծնվեց Ռոբը։ Հենց որ նա մի քիչ մեծացավ, սովորեց աղեղ լարել և նետ արձակել։

Մայրը կարծում էր, թե տղան մեծ հռչակ ձեռք կբերի թագավորի պալատում կամ վանքում։ Նա Ռոբին սովորեցնում էր կարդալ, գրել, քաղաքավարի լինել։

Տղան սիրում էր ուսումը, իսկ ավելի շատ՝ անտառում նետ ու աղեղը ձեռքին շրջելը։




Ռոբն երկու ընկեր ուներ. մեկը հորեղբոր որդին՝ Ուիլլն էր, իսկ մյուսը՝ Մարիանը, Հանթինգդոնի կոմսի աղջիկը։

Բայց մի օր թշնամիները Ռոբի հորը մեղադրեցին դավաճանության մեջ և նրան հեռացրին անտառապահի պաշտոնից, ձերբակալել տվին։ Նա բանտում մեռավ։ Ռոբը զրկվեց նաև մորից, կորցրեց իր մտերիմ ընկերներին։

Ռոբը նետահարեց թագավորի եղջերուների առաջնորդին, իսկ հետո իր նոր թշնամուն և ինքը օրենքից դուրս հայտարարվեց։ Ահա Ռոբը լսում է նոր ծանոթներին՝ երեք եղբայրներին.

— Մեր գլխավորը կդառնա օրենքից դուրս համարվող այն մարդը, որ կգնա Նոթինգեմ և կշահի նետաձգության մրցանակը։

Ռոբն այդպես էլ անում է։ Բայց այդտեղ էլ նա ընդհարվում է քաղաքի շերիֆի հետ։ Նա ոչ ոքից չի վախենում, կազմում է իր խումբը, ինքն իրեն կոչում Ռոբին Հուդ և կռվում հարուստների դեմ։

Հուդը խլում է ուժեղների ունեցվածքը, բաժանում աղքատներին։ Նա դառնում է ժողովրդի սիրված հերոսը, նրա բարեկամը։ Հուդն ազնիվ է, բարի, քաջ։ Ինչքա՜ն արկածների է հանդիպում նա, բայց հաղթահարում է բոլոր դժվարությունները...

Այդ ամենի մասին պետք է կարդալ «Ռոբին Հուդ» գրքում, որտեղ հավաքված են անգլիական ժողովրդի ավանդությունները։

«Ռոբին Հուդը» բնագրից թարգմանել է Պ. Մեսրոպյանը։ Նկարները կատարված են ըստ՝ Մաբիլ Բ. Հիլլի։

Կարդացեք այդ հետաքրքրական գիրքը։

## «ՀԱՍԿԵՐ»

*«Մի անգամ, ամառը, հարևան գյուղից մեզ մոտ էին եկել քեռիս ու իր կինը։ Նրանց հատիկներ էինք ուտեցնում։ Ուրախանում էինք, որ մեծանում են», այսպես էր ստացվել Գասպարյանի շարադրությունը։ Իսկ ինչո՞ւ։*

*Գասպարյանը ոչ թե հույսն իր վրա էր դրել, պատրաստվել նախքան դասարան մտնելը, այլ սրանից-նրանից արտագրել։*

*Լավ աշակերտը Գասպարյանի նման չպետք է լինի, այլ ազնիվ ու աշխատասեր։*

*Հավանաբար դուք արդեն գուշակեցիք, որ սա շատ ծանոթ «Գասպարյանի շարադրությունն է»։ Այս պատմվածքը գրել է հայտնի մանկավարժ-գրող Սիմակ Սահակյանը, և տպագրված է «Հասկեր» պատմվածքների ժողովածուի մեջ։*

*Պարզ և անպաճույճ լեզվով, հեղինակը բնական գույներով է նկարագրում անցյալի հայ գյուղը։ Շատ պատմվածքներում դեպքերը տեղի են ունեցել մոտավորապես յոթանասուն տարի առաջ։ Ինչքա՜ն լավ է տրված երեխաների կյանքը։ Ծանր էր այդ կյանքը, անընդհատ հոգսերի մեջ։ Երեխաներն օգնում են մեծերին, աշխատում վար ու ցանքի ժամանակ, խնամում իրենց սիրած կենդանիներին։*

*Սիմակը սովորեցնում է պաշտպանել խեղճերին, լինել ազնիվ, ընկերասեր, անձնազոհ։*




*Ահա Անուշը («Սղղանը»)։ Ի՜նչ անձնազոհն է նա։ Երբ սղղանով սարից իջնելիս Մինոյին վտանգ էր սպառնում, Անուշը պառկեց սղղանի դեմ-դիմաց և փրկեց նրան։*

*Մի ուրիշ պատմվածքում ցույց է տրված, թե ինչպես է Անուշը «գյուղի փրկիչ» դառնում։ Նա փրկում է բոլոր գյուղացիներին ծեծից, բռնությունից ու տուգանքից։*

*Լավ են կարդացվում նաև «Խոփսուրը», «Քաղցած չմնաց», «Ջնագնդի», «Ընկերոջ սիրուն», «Քաջ սայլվորը» և ուրիշ պատմվածքներ։*

*Դրանք ժամանակին տպագրվել են «Հասկեր» մանկական ամսագրում և այլ թերթերում։ Այժմ բոլորն էլ կարդացվում են հետաքրքրությամբ։*

*Գիրքը նկարազարդել է նկարիչ Մ. Սոսոյանը։*

# ՀԵՏԱՔՐՔԻՐ ԺԱՄԱՆՑ

## ՊԱՏԱՆԻ ԸՆԹԵՐՑՈՂ

*«Պիոներ» ամսագրի խմբագրությունը հայտարարում է կրոսվորդների, կրիպտոգրամաների, չայնվորդների, վիկտորինաների և այլ հետաքրքրաշարժ խնդիրների լուծման կոնկուրս։*

*1. Կոնկուրսն սկսվում է 1956 թ. հունվարից և կտևի մինչև նոյեմբեր ամիսը։*

*2. Ճիշտ և սպառիչ պատասխանողը կստանա տվյալ խնդրի համար նշանակված միավորների լրիվ քանակը, իսկ թերի պատասխանների դեպքում միավորների քանակը կիջեցվի։*

*3. Երևանում բնակվող աշակերտները պատասխանները պետք է ուղարկեն ամսագիրն ստանալուց հետո 5 օրվա ընթացքում, իսկ հեռավոր շրջաններում և ռեսպուբլիկայից դուրս բնակվողները՝ 15 օրվա ընթացքում։*

*4. Կոնկուրսի 25 մասնակիցներ, որոնք կշահեն ավելի շատ միավոր, կհամարվեն հաղթողներ և կպարգևատրվեն։*

*5. Պատասխանելիս գրեցեք ձեր հասցեն, տարիքը, որ դպրոցում և որ դասարանում եք սովորում։*

## Ո՞ւմ դիմանկարն է

*(Լուծման համար 10 միավոր)*

Օգտվելով ստորև բերված տառերից և թվանշաններից, դուք կարող եք նկարել ձեզ հայտնի հայ մեծ գրողի դիմանկարը։ Նկարել կարող է նաև նա, ով նկարել չգիտե։

Նկարելու համար պետք է վերցնել մեկ թերթ սպիտակ թուղթ և այն սովորական մատիտով բաժանել փոքրիկ քառակուսիների։ Լավ կլինի օգտագործել քառակուսիներ ունեցող տետրակի թերթեր (վերջիններս կպցնելով միմյանց)։ Ամեն հորիզոնական շարքում պետք է լինի 65 քառակուսի, իսկ ուղղահայացներում՝ 80։

Նկարելու համար պետք է ունենալ նաև սովորական «Պիոներ» և «Նեգրո» (սև տուշ) մատիտներ։

Տառերը և թվերը, որոնց օգնությամբ դուք պետք է նկարեք դիմանկարը՝ քառակուսիների երանգավորումներն են, և ունեն հետևյալ նշանակությունը. «ս» տառը՝ սև քառակուսի, «սպ»՝ սպիտակ և «մ» տառը՝ մոխրագույն քառակուսի։

Թվերը ցույց են տալիս, այս կամ այն երանգի քառակուսիների քանակը։

Այսպես օրինակ՝ 25) 12 սպ. 3 ս, 4 մ, 24 սպ, 13 ս, 9 սպ — այս նշանակում է, որ 25-րդ հորիզոնական շարքը կազմված է 12 սպիտակ, 3 սև, 4 մոխրագույն, 24 սպիտակ, 13 սև, 9 սպիտակ երանգ ունեցող քառակուսիներից։

Ցույց տրված հաջորդականությամբ երանգավորեցեք քառակուսիները, սկսելով այն առաջին հորիզոնական շարքի ձախ անկյունից։ Վերջացնելով առաջին հորիզոնական շարքի երանգավորումը, անցեք երկրորդ շարքին և այդպես մինչև 80-րդ հորիզոնականը։

«Նեգրո» մատիտով երանգավորում եք սև քառակուսիները, իսկ «Պիոներով» կամ սովորական մատիտով՝ մոխրագույն քառակուսիները։

Աշխատանքի հեշտացման համար բոլոր հորիզոնական շարքերը համարակալված են։

Աշխատեցեք անավարտ չթողնել նկարը։ Այն վերջացնելուց հետո կանգնեցրեք ուղղահայաց և մի փոքր հեռվից դիտեցեք։

1) 28 սպ, 9 ս, 28 սպ։ 2) 25 սպ, 16 ս, 24 սպ։ 3) 22 սպ, 22 ս, 21 սպ։ 4) 20 սպ, 27 ս, 18 սպ։ 5) 18 սպ, 31 ս, 16 սպ։ 6) 17 սպ, 33 ս, 15 սպ։ 7) 16 սպ, 35 ս, 14 սպ։ 8) 16 սպ, 35 ս, 14 սպ։ 9) 15 սպ, 36 ս, 14 սպ։ 10) 14 սպ, 38 ս, 13 սպ։ 11) 14 սպ, 38 ս, 13 սպ։ 12) 13 սպ, 40 ս, 12 սպ։ 13) 13 սպ, 40 ս, 12 սպ։ 14) 13 սպ, 41 ս, 11 սպ։ 15) 13 սպ, 41 ս, 11 սպ։ 16) 14 սպ, 40 ս, 11 սպ։ 17) 13 սպ, 24 ս, 3 մ, 14 ս, 11 սպ։ 18) 12 սպ, 5 ս, 4 մ, 10 ս, 9 մ, 14 ս, 11 սպ։ 19) 12 սպ, 5 ս, 1 մ, 20 սպ, 2 մ, 15 ս, 10 սպ։ 20) 12 սպ, 4 ս, 1 մ, 22 սպ, 2 մ, 14 ս, 10 սպ։ 21) 12 սպ, 4 ս, 1 մ, 23 սպ, 1 մ, 14 ս, 10 սպ։ 22) 13 սպ, 3 ս, 1 մ, 24 սպ, 14 ս, 10 սպ։ 23) 12 սպ, 3 ս, 2 մ, 24 սպ, 14 ս, 10 սպ։ 24) 12 սպ, 3 ս, 3 մ, 24 սպ, 13 ս, 10 սպ։ 25) 12 սպ, 3 ս, 4 մ, 24 սպ, 13 ս, 9 սպ։ 26) 12 սպ, 2 ս, 1 մ, 5 ս, 1 մ, 6 սպ, 8 ս, 1 մ, 7 սպ, 13 ս, 9 սպ։ 27) 12 սպ, 4 ս, 4 մ, 1 ս, 1 մ, 4 սպ, 2 ս, 7 մ, 1 ս, 6 սպ, 14 ս, 9 սպ։ 28) 12 սպ, 3 ս, 6 մ, 1 ս, 1 մ, 2 սպ, 1 ս, 1 մ, 1 սպ, 6 մ, 8 սպ, 14 ս, 9 սպ։ 29) 12 սպ, 2 ս, 3 մ, 6 ս, 5 սպ, 1 մ, 5 ս, 1 մ, 7 սպ, 14 ս, 9 սպ։ 30) 12 սպ, 3 ս, 1 մ, 1 ս, 1 մ, 1 սպ, 2 ս, 1 մ, 1ս, 4 սպ, 1 մ, 1 ս, 1 մ, 1 սպ, 2 ս, 1 մ, 1 ս, 1 մ, 6 սպ, 7 ս, 1 մ, 6 ս, 9 սպ։ 31) 13 սպ, 2 ս, 2 մ, 2 սպ, 3 ս, 1 մ, 8 սպ, 2 ս, 4 մ, 6 սպ, 5 ս, 2 մ, 6 ս, 9 սպ։ 32) 13 սպ, 2 ս, 6 մ, 1 ս, 7 սպ, 6 մ, 8 սպ, 5 ս, 2 մ, 6 ս, 9 սպ։ 33) 14 սպ, 1 ս, 1 մ, 4 սպ, 1 ս, 1 մ, 21 սպ, 5 ս, 2 մ, 6 ս, 9 սպ։ 34) 14 սպ, 1 ս, 1 մ, 3 սպ, 1 մ, 1 ս, 22 սպ, 3 ս, 1 մ, 1 ս, 2 մ, 6 ս, 9 սպ։ 35) 14 սպ, 1 ս, 2 մ, 2 սպ, 1 ս, 1 մ, 22 սպ, 3 ս, 4 մ, 6 ս, 9 սպ։ 36) 14 սպ, 1 ս, 4 մ, 1 ս, 23 սպ, 4 ս, 2 մ, 7 ս, 9 սպ։ 37) 14 սպ, 1 ս, 5 մ, 23 սպ, 3 ս, 3 մ, 7 ս, 9 սպ։ 38) 14 սպ, 2 ս, 4 մ, 6 սպ, 1 մ, 16 սպ, 3 ս, 1 մ, 9 ս, 9 սպ։ 39) 15 սպ, 1 ս, 3 մ, 2 ս, 2 մ, 2 ս, 2 մ, 15 սպ, 14 ս, 9 սպ։ 40) 15 սպ, 1 ս, 4 մ, 2 ս, 1 մ,

19 սպ, 13 ս, 10 սպ: 41) 16 սպ, 1 ս, 3 մ, 1 ս, 1 մ, 1 սպ, 1 մ, 18 սպ, 12 ս, 11 սպ: 42) 16 սպ, 1 ս, 4 մ, 1 սպ, 1 մ, 18 սպ, 12 ս, 12 սպ: 43) 16 սպ, 1 ս, 4 մ, 1 ս, 1 սպ, 2 ս, 16 սպ, 6 ս, 1 մ, 4 ս, 13 սպ: 44) 18 սպ, 2 մ, 8 ս, 1 մ, 12 սպ, 3 ս, 6 մ, 3 ս, 12 սպ: 45) 18 սպ, 3 մ, 1 ս, 1 մ, 2 սպ, 2 մ, 2 սպ, 1 մ, 10 սպ, 1 մ, 2 ս, 3 սպ, 3 մ, 4 ս, 12 սպ: 46) 19 սպ, 3 մ, 3 ս, 1 մ, 13 սպ, 1 մ, 2 ս, 4 սպ, 1 մ, 6 ս, 12 սպ: 47) 19 սպ, 6 մ, 14 սպ, 2 մ, 5 սպ, 8 ս, 11 սպ: 48) 20 սպ, 6 մ, 12 սպ, 2 մ, 4 սպ, 10 ս, 11 սպ: 49) 20 սպ, 3 մ, 14 սպ, 2 մ, 3 սպ, 13 ս, 10 սպ: 50) 20 սպ, 2 մ, 13 սպ, 3 մ, 3 սպ, 14 ս, 10 սպ: 51) 21 սպ, 1 մ, 12 սպ, 3 մ, 3 սպ, 15 ս, 10 սպ: 52) 21 սպ, 6 մ, 4 սպ, 4 մ, 4 սպ, 17 ս, 9 սպ: 53) 22 սպ, 10 մ, 6 սպ, 18 ս, 9 սպ: 54) 22 սպ, 6 ս, 2 մ, 7 սպ, 19 ս, 9 սպ: 55) 21 սպ, 8 ս, 7 սպ, 21 ս, 8 սպ: 56) 20 սպ, 10 ս, 5 սպ, 22 ս, 8 սպ: 57) 19 սպ, 3 մ, 5 ս, 2 մ, 2 ս, 4 սպ, 23 ս, 7 սպ: 58) 18 սպ, 5 մ, 3 ս, 4 մ, 1 ս, 3 սպ, 24 ս, 7 սպ: 59) 18 սպ, 1 մ, 1 սպ, 3 մ, 3 ս, 3 մ, 3 ս, 1 սպ, 26 ս, 6 սպ: 60) 17 սպ, 1 ս, 3 սպ, 2 մ, 3 ս, 2 մ, 3 ս, 1 մ, 28 ս, 5 սպ: 61) 15 սպ. 4 ս, 2 սպ, 2 մ, 3 ս, 2 մ, 2 ս, 1 մ, 32 ս, 2 սպ: 62) 13 սպ, 7 ս, 2 սպ, 1 մ, 3 ս, 2 մ, 1 ս, 1 մ, 28 ս, 1 մ, 6 ս: 63) 11 սպ, 9 ս, 2 սպ, 2 մ. 2 ս, 1 մ, 1 ս, 1 մ, 28 ս, 1 մ, 7 ս: 64) 9 սպ, 12 ս, 1 սպ, 2 մ, 3 ս, 1 մ, 28 ս, 1 մ, 8 ս: 65) 7 սպ, 14 ս, 2 սպ, 1 մ, 2 ս, 1 մ, 29 ս, 1 մ, 8 ս: 66) 6 սպ, 16 ս, 1 սպ, 1 մ, 1 ս, 1 մ, 29 ս, 1 մ, 9 ս: 67) 5 սպ, 17 ս, 1 սպ, 1 մ, 1 ս, 1 մ, 28 ս, 1 մ, 10 ս: 68) 4 սպ, 20 ս, 1 մ, 27 ս, 2 մ, 11 ս: 69) 3 սպ, 20 ս, 1 մ, 27 ս, 1 մ, 13 ս: 70) 2 սպ, 20 ս, 1 մ, 27 ս, 1 մ, 14 ս: 71) 1 սպ, 20 ս, 1 մ, 26 ս, 2 մ, 15 ս: 72) 20 ս, 1 մ, 26 ս, 1 մ, 17 ս: 73) 20 ս, 1 մ, 24 ս, 2 մ, 18 ս: 74) 19 ս, 1 մ, 23 ս, 2 մ, 20 ս: 75) 18 ս, 1 մ, 21 ս, 3 մ, 22 ս: 76) 18 ս, 1 մ, 19 ս, 2 մ, 25 ս: 77) 17 ս, 1 մ, 17 ս, 3 մ, 27 ս: 78) 16 ս, 1 մ, 16 ս, 2 մ, 30 ս: 79) 16 ս, 1 մ, 13 ս, 3 մ, 32 ս: 80) 15 ս, 1 մ, 11 ս, 3 մ, 35 ս:

*Կազմեցին՝ Գ. ՄԱՆՈՒԿՅԱՆ*
*Կ. ՔՈՉԱՐՅԱՆ*

# ԲՈՎԱՆԴԱԿՈՒԹՅՈՒՆ



*Շապիկը՝ Գ. ԽԱՆՋՅԱՆԻ և*
*Ս. ՍՏԵՓԱՆՅԱՆԻ*




**Խմբագրական կոլեգիա՝** ԱՆԱՆՅԱՆ Վ., ԲԱԲԱԽԱՆՅԱՆ Վ., ԽԱՉԱՏՐՅԱՆ Հ., ԿԱՊՈՒՏԻԿՅԱՆ Ս., ՄԱՐՏԻՐՈՍՅԱՆ Պ. (պատասխանատու քարտուղար), ՍԱՀԻՆՅԱՆ Ա., ՍՏԵՓԱՆՅԱՆ Ս., ՏԱԼՅԱՆ Վ. (խմբագիր), ՕՀԱՆՅԱՆ Ա.

„Пионер" на армянском языке. Адрес редакции: Ереван, ул. Маркса 21.
*Հասցեն՝ Երևան, Մարքսի փողոց № 21, հեռախոսներ՝ 2-44-83, 2-59-06*

*ՎՖ 00624։ Պատվեր 1435։ Տիրաժ 5000։ Տպագրական 4 մամուլ։ Ստորագրված է տպագրության 16/I 1956 թ.։*

*ՀՍՍՌ Կուլտուրայի մինիստրության Հրատարակչությունների և պոլիգրաֆ արդյունաբերության Գլխավոր վարչության № 1 տպարան, Երևան, Ալավերդյանի փող. № 65։*

# ԻՆՉՊԵՍ ԿԱԶՄԵԼ ԳԻՐՔԸ

Յուրաքանչյուր պիոներ պետք է լինի գրքի բարեկամ: Նա պետք է կարողանա գրքեր կազմել, վերանորոգել և փրկել վաղաժամ փչացումից: Գիրք կազմելու համար առանձնապես բարդ գործիքներ չեն պահանջվում: Ամենաբարդ բանը դա գիրք կազմելու դազգահն է (նկար № 1): Այդպիսի դազգահ կարող եք պատրաստել ինքներդ: Իսկ դազգահի բացակայության դեպքում գիրքը կարելի է կարել հասարակ աթոռի վրա:

Անհրաժեշտ է գիրքը նախապատրաստել կազմելու համար: Յուրաքանչյուր գիրք բաղկացած է առանձին տետրերից, որոնց անվանում են մամուլներ: Մամուլները պետք է զգուշությամբ անջատել միմյանցից և խնամքով մաքրել սոսնձից: Եթե գիրքը հին է, պետք է մաշված և կտրված էջերը զգույշ սոսնձել թղթի նեղ ժապավեններով: Վերջում բոլոր թերթերը դասավորել էջերի հաջորդական համարներով: Գրքի մեջքին սղոցել երկու ակոս այնպիսի հեռավորության վրա, ինչպիսի հեռավորության վրա կապված են դազգահի շպագատները, այս առվակներից դեպի դրսի եզրը պատրաստենք ևս երկու ակոս: Նախապատրաստական աշխատանքներն ավարտված են: Այժմ տետրերը էջերի հաջորդականությամբ կարվում են դազգահում ձգված թելերից, ինչպես այդ ցույց է տրված № № 2 և 3 նկարներում: Յուրաքանչյուր մամուլ կարելուց հետո անհրաժեշտ է փայտե բակով նըստեցնել նախորդ մամուլի վրա: Կարելուց հետո գիրքը հանենք դազգահից և կտրենք մեջքի շպագատներն այնպես, որ յուրաքանչյուր կողմից մնա 5—6 սանտիմետր շպագատ: Հետո գրքի մեջքին քսենք ատաղձագործական սոսնձի թույլ լուծույթ և կարված գրքի վրա դրենք մի ծանր առարկա: Այդ վիճակում պետք է թողնել որոշ ժամանակ, որ չորանա: Կազմելու մյուս աշխատանքների համար պետք է պատրաստել օսլայի ջուր: Դրա համար մի ամանում սառը ջրի մեջ լուծենք մի քիչ օսլա կամ կարտոֆիլի ալյուր: Հետո օսլայի լուծույթը բարակ շիթով լցրենք եռացրած ջրի մեջ և վրձինով անընդհատ խառնենք, մինչև ստացվի կիսաթափանցիկ ջոյը: Սոսինձը եփելուց հետո պատրաստում են գրքի կազմը:

Կազմի համար պետք է կտրել երկու կտոր ստվարաթուղթ, որոնց լայնությունը հավասար լինի գրքի լայնության, իսկ երկարությունը գրքի երկարությունից մի քիչ ավելի: Հետո կազմի մեջքի և անկյունների համար որևէ հյուսվածքից կտորներ ձևենք: Ստվարաթղթի կտորները սոսնձենք մեջքի հյուսվածքին, այնպիսի հեռավորության վրա, որ գրքի մեջքը ազատ տեղավորվի կազմի երկու ստվարաթղթերի մեջ: Հյուսվածքի մեջքի հատվածում սոսնձենք հաստ թղթի նեղ շերտ: Մեջքի հյուսվածքի ծայրերը ծալենք և սոսնձենք: Ստվարաթղթի անկյունները պատվում են նույն հյուսվածքի փոքրիկ կտորներով: Մնում է կազմի դրսի երեսներին փակցնել գունավոր թուղթ, որի ծայրերը պետք է նախօրոք կտրել, իսկ եզրերը ծալել կազմի ներսը և սոսնձել: Կազմը պատրաստ է (նկար № 4):

Երբ սոսինձը չորանա, գիրքը հանենք ծանրության տակից և ուղիղ անկյունով կտրենք նրա եզրերը, որից հետո փայտե բակով երկու կողմից ծեծենք գրքի մեջքը՝ կիսակլոր տեսք տալու համար: Դրանից հետո շպագատների չորս ծայրերն էլ քանդում են և խծծում: Մնում է կազմն ամրացնել գրքին: Այս նպատակով գիրքը տեղավորենք կազմի մեջ և մի կողմի շպագատների խծծած երկու ծայրերը սոսնձենք կազմի ստվարաթղթին, հետո սրանց վրա սոսնձենք գրքի մակերեսի չափով կտրած երկտակ թուղթ: Գիրքը շրջենք և մյուս կողմի շպագատների ծայրերը սոսնձենք կազմի երկրորդ ստվարաթղթին (նկար № 5):

Կազմած գիրքը կրկին դրենք ծանրության տակ: Որոշ ժամանակից հետո, երբ գիրքը չորացած կլինի, հանենք ծանրության տակից:

Մ. ՄԱԴԱԹՅԱՆ


Նկար 1.


Նկար 2.


Նկար 3.


Նկար 4.


Նկար 5.

